# ԼԵՆԻՆ

*ՎԱՐԴԳԵՍ ՊԵՏՐՈՍՅԱՆ*

*Նկ. Տ. ԹՈՔՄԱՋՅԱՆԻ*

Քսանչորս թի՜վ... Մոսկվա... Հունվար... Գիշեր...
Ո՞վ կարող է արդյոք ձեզ չհիշել։
Երբ տուն եկավ հայրը գործարանից,
Թարթիչներին արցունքն էր լուռ սառել.
Նա չնայեց անգամ մանուկներին,
Սենյակ մտավ անձայն, գլխարկն հանեց...
Մանուկների ձեռքին գիրք կար մի բաց,
Նրանք կարդում էին՝ «Լենին պապին»,
Նրանց հայացքի մեջ հայրը կարդաց.
«Շնորհակալ ենք քեզ, Լենին պապի»։
Երբ որ հորը տեսան քույր ու եղբայր
Գիրքը թողած նրա մոտ վազեցին։
— Հայրի՛կ,— Լենան ասաց,— մեզ Կրեմլ տար,
Մենք ուզում ենք տեսնել Լենին պապին։
Հայրի՛կ, հայրի՛կ, ասա՛, մեզ կտանե՞ս...
Սակայն լուռ էր հայրը, դեմքը սառած։
— Հայրի՛կ, հայրի՛կ...
Ու լուռ հայրը խոսեց՝
— Լենին պապին...
Այսօր... հենց նոր մեռավ...
Եվ փշրվեց նրանց ժպիտն ասես
Ու կոկորդում մնաց ծիծաղը հորդ։
— Հայրի՛կ, ի՞նչ ես ասում,— Լենան լացեց՝
Դեմքը թաքցնելով գրքի մեջ հոր...
Իսկ սեղանի վրա, գրքից դեռ բաց,
Իր հայացքում այնքան, այնքա՜ն արև,
Պայծառ Իլյիչն էր լուռ նայում նրանց
Հայրն ու ուսուցիչը մեր հանճարեղ...
Քսանչորս թի՜վ.. Մոսկվա... Հունվար... Գիշեր...
Ո՞վ կարող է արդյոք ձեզ չհիշել...
Ու տարիներ անցան... Եղբայր ու քույր
Հասակ առան Կրեմլյան աստղի ներքո,
Ապագայի ճամփան լույս ու մաքուր
Փռվեց նրանց առաջ անվերջ երգով։



Ու տարիներ անցան, մեկի կրծքին
Փայլեց կոմսոմոլի նշանը վառ,
Իսկ մյուսի կրծքին վզկապ կարմիր
Վառվեց որպես երդում մի խանդավառ։
Այդ քույրն ու եղբայրը սերունդն է մեր,
Որ այն օրից կոչվում է Լենինյան,
Նրան Ստալինն է տանում դեպի վեր,
Ու միշտ բաց է նրա կյանքի ճամփան։






*Լենինի – Ստալինի գործի պայքարին եղի՛ր պատրաստ*

№ 1

ՀՈՒՆՎԱՐ

1953 թ. ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 25-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ԵՎ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ

Վ. Ի. ԼԵՆԻՆ

# ԻԼՅԻՉԻ ՀԻՇԱՏԱԿԻՆ

ՀՈՎՀԱՆՆԵՍ ՇԻՐԱԶ



Ձմեռ է ու բուք, մրսում են կարծես
Լեռներ, անտառներ ցրտից կուչ եկած.
Բայց շուրջդ պատվո պահակների պես
Եղևնիներն են կանգնել վեհապանծ,
Եվ իրենց գլխին առած ճյուսքը ձյան
Ուզում են գրկել դամբանդ քարե,
Որ դամբարանիդ մարմարներն անգամ
Զմռսեն ցրտում, ո՛վ մեծ մարգարե:

# ԻՄ ՈՒՍՈՒՑՉՈՒՀԻՆ

ՊՈՂՈՍ ԱԲԱՋՅԱՆ

Երբ նա մտնում է ներս
Դեմքին ժպիտն անշեջ,
Մորս եմ տեսնում ասես
Նրա աչքերի մեջ:
Նա խոսում է դանդաղ,
Ասես անուշ երգում.
— Եղե՛ք սրտոտ, խիզախ,
Երեխանե՛ր, կյանքում.
Եղե՛ք Իլյիչի պես՝
Թե՛ պարզ, թե՛ իմաստուն,
Եվ, սովորե՛ք, ինչպես
Իլյիչն էր սովորում...
Եվ երբ երեկոյան
Իմ դասերն եմ սերտում,
Նրա խոսքերը պարզ
Հնչում են իմ սրտում:

# ԿՈՐԱԾ ԿԻՐԱԿԻ

Շ. ԹԱԹԻԿՅԱՆ

Նկ. Վ. ԹԵՎԱՆՅԱՆԻ

*Դասերից հետո Քնարիկն ու Սեդան տուն էին գնում: Արդեն 5-րդ տարին է նրանք համարյա ամեն օր միասին են տուն գնում: Եթե պատահում է, որ միասին չեն, ապա այդ նշան է, որ ընկերուհիներից մեկը հիվանդ է, կամ ընկերուհիները նեղացած են միմյանցից: Ասենք, նման դեպքեր էլ քիչ են պատահում, որովհետև թե Քնարիկը, թե Սեդան առողջ, ժիր երեխաներ են, իսկ նեղանալու առիթներ էլ համարյա չեն լինում: Ահա նրանք հասան փողոցի անկյունը, որտեղ սովորաբար բաժանվում են. Քնարիկն ասաց.*

*— Ջա՛ն, վաղը կիրակի է:*

*— Ջա՛ն, վաղը կիրակի է,— կրկնեց Սեդան և հարցրեց,— վաղը դու ի՞նչ ես անելու:*

*— Այնքա՛ն բան,— ասաց Քնարիկն ու արագ «ցտեսություն» ասելով հեռացավ: Նա այնպես էր շտապում, կարծես հենց հիմա գնալու է տուն ու սկսելու է նախապատրաստել վաղվա գործերը:*

**I. Այսօր շաբաթ է**

*Քնարիկը տուն հասավ թե չէ, արագ ճաշեց, ապա վազեց բակ: Եվ ահա բավական ժամանակ անցնելուց հետո տատիկը բակ դուրս եկավ ու ձայն տվեց.*





— Հերի՛ք է խաղաս. չե՞ս մտածում դասերդ պատրաստելու մասին։

Քնարիկը, որը վազվզում էր, մի պահ կանգ առավ, նայեց տատիկին, ապա հարցրեց.

— Չգիտե՞ս, որ այսօր շաբաթ է, իսկ վաղը կիրակի է։

Նա այդ ասաց զարմացած։

— Հետո՞ ինչ,— հարցրեց տատիկը։ Երևում էր, որ նա էլ է իր հերթին զարմացել։

Բայց Քնարիկն ավելի զարմացավ. երևի տատիկը չհասկացավ։ Նա վազեց փաթաթվեց տատիկի վզով, համբուրեց։

— Ախր ինչպե՞ս չես հասկանում, տատի՛կ, որ վաղը կիրակի է։ Վաղը ես այնքա՜ն ժամանակ կունենամ դասերս պատրաստելու։

— Դու միշտ այդպես ես ասում,— քրթմնջաց տատիկը, սակայն չկարողացավ զսպել ժպիտը։

Քնարիկն իրեն խրախուսված զգաց տատիկի բարեսիրտ ժպիտից, բայց և այնպես կեղծ կամակորությամբ ոտքը գետին խփեց և ասաց.

— Տատիկ, ես չե՞մ ասում, որ անցած բաների մասին մի հիշիր...

— Դե լավ, լավ,— նորից քրթմնջաց տատիկը և ժպտաց ավելի բարեսրտությամբ։

Դե նա այնքան բարի է... Քնարիկը մեկ անգամ էլ տատիկին համբուրեց և վազեց։ Իսկ քիչ հետո զրնգում էր նրա ուրախ և հնչեղ ձայնը.

— Վա՜յ, Լուսի՛կ, դու մոռացե՞լ ես, որ այսօր շաբաթ է։

***

Արդեն ուշ երեկո է։ Անկողնում պառկելով, Քնարիկը մտածեց՝ «վաղն առավոտյան դասերս կպատրաստեմ, հետո...» բայց այստեղ հիշեց, որ հայրիկը խոստացել է իրեն գազանանոց տանել։ Ինչպե՞ս կարելի է, իհարկե, ինքը գազանանոց կգնա, իսկ դասերը երբ էլ լինի՝ կհասցնի «վաղը այնքա՜ն ժամանակ կունենա ինքը»։ Այսպես մտածեց Քնարիկը և անմիջապես քնեց։ Չէ՞ որ ուշ ժամ էր, իսկ ինքն էլ շա՜տ-շատ էր հոգնել...

***

Իսկ նրա ընկերուհին՝ Սեդան, այդ ժամին արդեն վաղուց քնած էր։ Ո՞վ գիտե քանի պայծառ երազներ էր տեսել... Նա չիմացավ, ինչպես հայրն ու մայրը կանգնեցին իր գլխավերևում։

— Լավն է մեր Սեդան,— ասաց հայրիկը,— ինչքան համոզեցի դասերից գոնե մեկը թողնել՝ վաղը պատրաստել, չհամաձայնվեց, «ինչպե՞ս կարելի է», ասում է։

Իսկ մայրը թեքվեց և խանդաղատանքով համբուրեց նրա ճակատը։ Սեդան մինչև անգամ այդ էլ չիմացավ, այնքա՜ն, այնքա՜ն խորն էր քնել նա։

Բարի գիշե՛ր, Սե՛դա։

### 2. Ուրախ առավոտ

Երբ Սեդան արթնացավ, վեր թռավ անկողնուց, վազեց լուսամուտի մոտ, ապա ուրախությունից ծափ տվեց, տեղում պտտվեց և բացագանչեց.

— Ի՜նչ լավ ձյո՜ւն է գալիս։



Նա արագ հագնվեց, վազեց դուրս, մի ձնեգունդ պատրաստեց ու ձեռքում պահած մտածեց՝ ո՞ւմ հարվածել։

Ինչ ուրա՜խ է բակում, ինչ աղմկո՜տ է... Բոլո՛րը, բոլո՛րը ձնեգունդ են խաղում։ Խաղում է նույնիսկ փոքրիկ Գարիկը։ Ի՜նչ ծիծաղելի է վազում նա։ Նրա պատրաստած ձնեգնդերը այնքա՜ն, այնքան փոքրիկ են։ Այնքան էլ մոտի՜կ է գցում նա։

Երեխաներն այնպես ուրախ էին աղմկում, որ Սեդայի հայրիկն էլ նույնիսկ չդիմացավ. դուրս եկավ, ու ինքն էլ սկսեց խաղալ։ Ինչքա՜ն ծիծաղելի էր։

Հետո Սեդայի հայրիկն ասաց.

— Երեխանե՛ր, արդեն բավական է ինչքան ձնեգունդ խաղացինք։ Եկեք վերջացնենք։

Երբ Սեդան արդեն պատշգամբում էր, Կիման նրա ետևից ձնեգունդ նետեց: Սեդան մոտեցավ, վերցրեց բազրիքին դրված ձնեգունդը և ուզեց հարվածել Կիմային: Ահա նա բարձրացրեց ձեռքը... Բայց ձնեգունդը չնետեց: Երկար ժամանակ մնալով, այն քարի նման ամրացել էր: Նրանով չէր կարելի հարվածել: Չէ՞ որ ցավ կպատճառի...



**3. Այսպես էլ կիրակի՞**

Առավոտն այնքան ուրախ էր, որ մենք քիչ մնաց Քնարիկին մոռանայինք: Եկեք տեսնենք նա ինչ է անում...

Այդ ժամին Քնարիկը նոր էր վեր կացել:

— Ախ դու ծո՛ւյլ,— ասաց նրան հայրիկը,— գազանանոց գնացողն այսքան ո՞ւշ կարթնանա:

— Բայց չէ՞ որ այսօր կիրակի է,— ծույլ-ծույլ քնաթաթախ ժպտաց Քնարիկը, ապա գնաց լվացվելու:

Ահա և թեյեցին: Հայրիկը, Քնարիկն ու Հրանտիկը հագնվեցին: Երբ տանից դուրս էին գալու, Հրանտիկը հարցրեց.

— Հայրիկ, իսկ կապիկները հիմա չե՞ն մրսում:

— Կապիկնե՞րը... կապիկների համար,— ցանկացավ պատասխանել հայրիկը, բայց այստեղ հանկարծ մի բան հիշեց.

— Քնարի՛կ, դու դասերդ պատրաստե՞լ ես:

Քնարիկը ցանկացավ պատասխանել «պատրաստել եմ»,— բայց չկարողացավ սուտ խոսել: Սկզբում շփոթվեց, բայց հետո ինքն իրեն հավաքելով նա ասաց.

— Բայց հայրի՛կ, ես կարող եմ պարապել նաև երեկոյան, այսօր կիրակի է...

Հայրիկի տրամադրությունը նկատելիորեն վատացավ:

— Երեկոյան հոգնած կլինես, չես կարողանա,— ասաց նա, ապա մի փոքր մտածելուց հետո ավելացրեց.— Գիտե՞ս ինչ. գազանանոց կգնանք ես ու Հրանտիկը, իսկ դու կպատրաստես դասերդ:

Քնարիկը գիտեր, որ բողոքելն իզուր է, հայրիկն իր խոսքը երբեք չի փոխի:

— Այսպես էլ կիրակի՞,— նրանց գնալուց հետո լացակումած տրտնջում էր նա,— ոչ մի տեղ չեմ գնալու:

Քնարիկն այդպես էլ չի իմանա կապիկները ձմռանը գազանանոցում մրսո՞ւմ են, թե չէ...

**4. «Ո՞վ է այդտեղ ետ մնում»**

Ժամը տասնմեկն անց կեսին կայանալու է դրուժինայի գծով դահուկային մրցում. «հանկարծ չուշանամ»— մտածեց Սեդան:

Նա հագավ սպորտային կապույտ կոստյումը, վերցրեց փայլուն, յուղած դահուկները և վազեց: Թեև շտապում էր, բայց ճանապարհին կանգ առավ Քնարիկենց պատուհանների առաջ ու ձայն տվեց.

— Քնարի՜կ:

Դուրս եկավ Քնարիկի մայրը:

— Արդեն գնացե՞լ է,— հարցրեց Սեդան:

— Նա ոչ մի տեղ էլ չի գնացել, դասերն է պատրաստում:

— Ինչպե՞ս կարելի է,— զարմացավ Սեդան,— չէ՞ որ դրուժինայի գծով մրցում է,

ի՞նչ է, ուզում եք ջոկատն իր պատճառով տուժի և պակաս միավորներ ստանա։

— Իսկ եթե նա երկուսներ ստանա ջոկատը չի՞ տուժի։

— Օ՜յ, իհարկե, կտուժի,— վախեցած շտապեց համաձայնվել Սեդան և արդեն վազելով ավելացրեց,— թող պարապի, թող պարապի։

***

Ուրախ ճիչով ու կանչով
Աղջիկներ են սլանում,
Սլանում են ու կանչում,—
— Ո՞վ է այդտեղ ետ մնում...

Աղջիկները փափուկ ձյան վրայով քշում են դահուկները։ Եվ բոլորովին էլ ցուրտ չէ։ Ով ծույլ է, ով վախենում է դահուկներով սլանալ, թող նա մրսի, իսկ դահուկավոր պիոներուհիների համար շատ ուրախ է և հաճելի։ Աղջիկները քշում են դահուկներն ու կանչում։

— Ո՞վ է այդտեղ ետ մնում։

Ոչ ոք ետ չի մնում։ Ասենք, ինչպե՞ս չէ։ Ետ է մնում միայն Քնարիկը, որ այդ ժամին տանը նստած պարապում է, ինչքան բանից է նա ետ մնում։ Ինչքա՜ն դժվար է կիրակի օրը դասերը սովորել։

## 5. Ուրախ օր

Իսկ երբ դահուկային մրցումները վերջացան, Սեդան գնաց համերգի։

Երբ բեմի վրա երևաց սիրելի երգչուհին՝ ամենքն էլ ոգևորված ծափահարեցին։ Ծափահարում էր նաև Սեդան։ Սեդան ուզում էր, որ նա շատ երգի, բայց երգչուհին երգեց չորս երգ։ Իսկ Սեդայի ամենասիրած երգերից մեկը, որը կոչվում էր «Սոխակ» կրկնեց։

Տուն վերադառնալիս Սեդան մտածում էր. «Ինչ լավ բա՜ն է, շատ լավ երգել իմանալը և մարդկանց բավականություն պատճառելը»։ Տանը նա մայրիկին ասաց.

— Մայրիկ, ինչ լա՜վ է երգել իմանալը։ Երբ ես մեծանամ, պետք է երգեմ և մարդկանց ուրախացնեմ։

— Ամեն լավ բան մարդկանց ուրախացնում է, աղջի՛կս,— ասա՛ց մայրիկը,— միայն թե հարկավոր է օգտակար գործ կատարել և այդ գործը լավ կատարել։

Եվ համերգի տպավորության ու մայրիկի խոսքերի ազդեցության տակ Սեդան մտածում էր. «Ի՞նչ լավ բան կարելի է անել»։ Այդ ժամանակ հարևան տանից նա լսեց փոքրիկ Գարիկի լացի ձայնը։ «Տեսնես ինչո՞ւ է լաց լինում»,— մտածեց Սեդան։ Քիչ հետո, հարևանի տուն գնալով, նա իմացավ, որ Գարիկը լաց է լինում, որովհետև մենակ ձանձրանում է, ուզում է բակ դուրս գալ խաղալու, իսկ մայրիկը չի թողնում։

— Այսօր արդեն դրսում շատ ես խաղացել, բավակա՛ն է,— ասում էր նա։

Սեդան այնպե՜ս չէր ուզում, որ Գարիկը լաց լինի, այնպե՜ս չէր ուզում։

— Գարի՛կ, արի, ես քեզ համար մի հետաքրքիր պատմություն կարդամ, ուզո՞ւմ



*ես,— ասաց նա նստելով լացող երեխայի կողքին և նրա արցունքները սրբելով:*

*— Պատմությո՞ւն,— արցունքների միջից ժպտաց Գարիկը, նա շատ, շատ է սիրում հետաքրքիր պատմություններ՝ խորամանկ աղվեսի, վախկոտ նապաստակի, գոռոզ աքաղաղի մասին:*

*Քիչ հետո Գարիկն արդեն ամեն ինչ մոռացած, աչքերը լայն-լայն բաց արած լսում էր:*

### 6. Կորած կիրակի

*Հաջորդ օրը դպրոցում հայոց լեզվի դասատու ընկեր Մարգարյանը երեխաներին մի անսպասելի թեմայով շարադրություն հանձնարարեց:*

*— Գրեցե՛ք,— ասաց նա,— թե ինչպես եք անցկացրել ձեր կիրակին: Եվ ամեն մեկն իր շարադրության համար թող վերնագիր մտածի:*

*Ահա ճռճռում են գրիչները: Միայն Քնարիկն է գրչակոթը կրծոտում և ինչ-որ երկար մտածում:*

*— Քնարի՛կ, դու ինչո՞ւ չես գրում,— նրան մոտենալով հարցրեց ուսուցչուհին:*

*— Դե ի՞նչ գրեմ,— կմկմաց Քնարիկը,— սովորական կիրակի է եղել, է՛լի...*

*— Իսկ դու գրիր հենց այդ սովորականի մասին:*

*Այդ նույն ժամանակ Սեդան գրում էր: Նա այնպես էր աշխատանքով տարվել, որ ոգևորությունից մինչև անգամ կարմրել էին նրա այտերը: Վերջապես սկսեց գրել նաև Քնարիկը:*

***

*Երբ դասերից հետո ընկեր Մարգարյանը ստուգում էր շարադրությունները, տեսավ, որ Քնարիկը վերնագիր չի գրել: Ընկեր Մարգարյանը նրա աշխատանքը կարդալուց և սխալներն ուղղելուց հետո շարադրության համար որպես վերնագիր գրեց.*

*«Կորած կիրակի»:*

# ԵՂԵՎՆԻ

*Խ. ՀՐԱՉՅԱՆ*

*Նկ. Ռ. ԱՌՈՒՍՏԱՄՅԱՆԻ*

Նա եկել է ցուրտ հյուսիսից
Եվ անում է հարավում տաք՝
Այստեղ,
Մեզ մոտ,
Արձակ բակում,
Իմ հայրենի երկնքի տակ:
Ձմեռ է խոր: Ու ողջ գիշեր
Ձյունը իջնում է շարունակ:
Պատուհանից դուրս եմ նայում՝
Հրաշք-հեքիաթ է աննման:
Բակում փոքրիկ տղա, աղջիկ,
Ցրտից շիկնած ականջ, երես,
Ուրախ ճիչով ու աղմուկով,
Ձնագնդի են խաղում, տե՛ս:
Դուրս եմ գալիս ու մոտենում
Իմ եղևնուն՝ ծածկված ձյունով.

Նա ցուրտ, փափուկ ձյունն է բռնել
Իր թավ, կանաչ ճյուղիկներով:
Եվ թվում է՝ հենց այս ժամին,
Ինչպես փոքրիկ, առույգ տղա,
Խառնըվելով մանուկներին,
Ձնագնդի պիտի խաղա:






# Ձմեռ պապի ողջույնը




ՌՈՒԲԷՆ ՂԱՐԻԲՅԱՆ

Նկ. Լ. ՆԱԼԲԱՆԴՅԱՆԻ

*Ընդարձակ և լուսավոր սենյակ. մի խումբ երեխաներ իրար ձեռք բռնած, տոնածառի շուրջը պարում ու երգում են.*

ՄԻ ԵՐԵԽԱ.— (Երգում է)

*Հյուր ես եկել այսօր մեզ,*
*Ջա՜ն, տոնածառ լուսերես.*
*Մենք էլ շուրջդ բոլորել,*
*Ուրախ շուրջպար ենք բռնել։*

ԽՈՒՄԲԸ.— (Ձայնակցում է)

*Շողա՜, շողա՜ միշտ պայծառ,*
*Մեր լույս կյանքի տոնածառ։*

(Զարմացած, շուրջը նայելով ներս է մտնում մի ծերունի. երգ ու պարը դադարում է, երեխաները հետաքրքրությամբ նայում են նրան)

ԾԵՐՈՒՆԻ.— (Հիացած)

*Ինչ սիրո՜ւն է, ինչ զարդարվա՜ծ,*
*Տոնածառն էլ մեջտեղ դրված.*
*Նոր դպրոցի շենք է գուցե.*
*Ե՞րբ են արդյոք այս կառուցել։*

ԱՌԱՋԻՆ ԵՐԵԽԱ.— (Մոտ գալով)

*Ութ, ինն ամիս հազիվ լինի,*
*Բայց ո՞վ ես դու, ով ծերունի։*

ԾԵՐՈՒՆԻ.— (Կեղծ սպառնալով)

*Ասած խոսքդ ետ առ խնդրեմ,*
*Ես երբեք էլ ծերունի չեմ։*

ԵՐԿՐՈՐԴ ԵՐԵԽԱ.— (Ծիծաղում է)

*Ծերունի չե՞ս, լա՛վ ես խոսում,*
*Իսկ մորուքդ ի՞նչ է ասում։*

ԵՐՐՈՐԴ ԵՐԵԽԱ.—

*Մի՛ թաքցնիր դեմքդ պապի,*
*Դու այդպիսով մեզ չե՛ս խաբի։*

ՉՈՐՐՈՐԴ ԵՐԵԽԱ.—

*Դե, վերջապես, ո՞վ ես, ասա՛,*
*Ի՞նչ նոր ձևի կատակ է սա։*

ԾԵՐՈՒՆԻ.— (Ծիծաղում է)

*Չեք ճանաչո՞ւմ, թե ես ով եմ,*
*Ես միշտ էլ այս հագուստով եմ։*

(Գունավոր վերնազգեստը հանում է, ոտից գլուխ սպիտակ հագած, կարմրած դեմքով կանգնում է տոնածառի մոտ).

ԲՈԼՈՐԸ.— (Նրան շրջապատում են)

*Ձմեռ պապի՜ն, ձմեռ պապի՜ն.*
*Բարո՛վ եկար ձմե՛ռ պապի։*

ՁԱՅՆԵՐ.— (Ամեն կողմից)

*Աթոռ տվեք, հոգնած է նա,*
*Թող շունչ քաշի, քիչ տաքանա։*

ՁՄԵՌ ՊԱՊԻ.— (Նստելով, կատակում է)

*Այսօր այնքան ցուրտ չէ դրսում*
*Թեև դողում, բայց... չեմ մրսում.*
*Միայն ասենք քիթս է սառել,*
*Ականջներս են սառույց դառել,*
*Մեջքս է մրսել այնպես ուժեղ,*
*Ձեռք ու ոտքս... էլ ոչ մի տեղ։*

(Բոլորը ծիծաղում են).

*Մի ծիծաղեք, կանցնի, ոչինչ,*
*Միայն պետք է շփվել մի քիչ.*
*Իսկ Լևոնին նայեք, տեսեք,*
*Ձյուն-ձմեռ է բերել ասեք,*
*Հագած ձեռնոց, դրած գլխարկ*
*Ոնց է նստել դահլիճում տաք։*

ՄԻ ԵՐԵԽԱ.— (Գլուխը կախելով)

*Դե, ի՞նչ անեմ, ցուրտ է, ձմեռ,*
*Այսպես հագած մրսում եմ դեռ։*

ՁՄԵՌ ՊԱՊԻ.—

Միևնույն է, ցուրտ է, թե տաք,
Մի խորհուրդ տամ, չմոռանաք,
Ով սպորտով միշտ չզբաղվի,
Որքան կուզե շատ հագնվի,
Երբե՛ք, երբե՛ք չի տաքանա,
Միշտ էլ մրսկան կլինի նա։

ՀԻՆԳԵՐՈՐԴ ԵՐԵԽԱ.—

Ես սահնակ եմ գնել այսօր։

ՎԵՑԵՐՈՐԴ ԵՐԵԽԱ.—

Ես չմուշկներ ունեմ դեռ նոր։

ՅՈԹԵՐՈՐԴ ԵՐԵԽԱ.—

Իսկ ես ունեմ լավ դահուկներ,
Վարում եմ վարժ ու աներեր։

ՁՄԵՌ ՊԱՊԻ.—

Այդ շատ լավ է, ձգտեք այդպես
Ամառ, ձմեռ միշտ կոփել ձեզ։

Հա՛, մոռացա ես այն մասին,
Ինձ դպրոցից եկան ասին,
Որ ձեզանից շատ շատերը
Վերացրել են «երկուսները»։

ՁԱՅՆԵՐ.—

Ուշացե՞լ ես, Ձմեռ պապի,
Քո հին մետրով մեզ մի չափի,
Կտրված ես դու մեր կյանքից.
Մեզ հետ խոսիր «չորսից», «հինգից»...



ՁՄԵՌ ՊԱՊԻ.— (Ծիծաղելով)

Ապրե՛ք, ապրեք, լավ մանուկներ,
Արժե գովել եռանդը ձեր.
Դրա համար ձեր սիրելի
Աշուն տատին մրգերով լի
Տոպրակներ է կարել պես-պես
Եվ նվեր է ուղարկել ձեզ։
Մի հանելուկ ասեմ հիմա.
Ով ձեզանից այն շուտ գտնի,
Առաջինը նա կստանա,
Լիք տոպրակը աշուն տատի։

ՁԱՅՆԵՐ.—

Ասա՛, ասա՛։

ՁՄԵՌ ՊԱՊԻ.— (Մտածելով)

*Ծնվել է նա մեր մեծ երկրում,*
*Ամեն հողում բույն ունի,*
*Եվ կոչվում է ողջ աշխարհում*
*Խաղաղությա՛ն*

ԲՈԼՈՐԸ.—

*Աղավնի։*

ՄԻ ՁԱՅՆ.—

*Իսկույն ասեմ, գտա՛, գտա՛,*
*Վոլգա-Դոն մեծ ջրանցքն է դա։*

ՁՄԵՌ ՊԱՊԻ.— (Հիացած և ուրախ)

*Ապրե՛ք, ապրե՛ք, դուք խելոքներ,*
*Արժե խոսել ձեր մասին,*
*Դե, ժրաջան իմ թոռնիկներ,*
*Եկեք ձեզ հետ միասին*



ՁՄԵՌ ՊԱՊԻ.—

*Ինչ շուտ գտաք, ճիշտ է, ճիշտ է,*
*Երևում է՝ պարզ է, հեշտ է,*
*Այժմ գցեմ ձեզ նեղ տեղը.*
*Փորձեք շարժել ձեր ուղեղը.*
*Աշխարհ եկա մարդկանց ջանքով,*
*Հերոսական աշխատանքով,*
*Հիմա անվերջ ես շտապում,*
*Հինգը ծով եմ իրար կապում.*

*Գոչենք մեկտեղ ձայնով ուժգին*
*Ստալինին մենք այսօր*
*Մեր հարազատ, մեր թանկագին*
*Քո նոր տարին շնորհավոր։*

(Ձմեռ պապիկի հետ միասին շուրջպար բռնած, բոլորը պտտվում են զարդարված տոնածառի շուրջը և երգում):

*Շողա՛, շողա՛ միշտ պայծառ,*
*Մեր լույս կյանքի տոնածառ։*

# ՎԵՐՋԻՆ ԵՂԵՎՆԻՆ

(Արտասահմանի կյանքից)

Հ. ՎԱՐԴԱՆՅԱՆ

Նկ. Մ. ՍՈՍՈՅԱՆԻ

*Երբ վաղ առավոտյան երեխաները եկան, եղևնիները դեռ չէին բերել: Նրանք իսկույն անհանգստացան, որ տոնի նախօրյակ լինելու պատճառով, թերևս եղևնիներ չվաճառեն: Բայց մի քիչ էլ սպասելով, տեսան ինչպես բեռնատար ավտոմեքենայով բերեցին բազմաթիվ ծառեր և շարեցին պատի տակ:*

*Ու երեխաները վաճառման վայրից քիչ հեռու, մնացին կանգնած՝ սպասելով վերջին եղևնուն:*

*Մի շաբաթ շարունակ թափառելով քաղաքում, նրանք չէին կարողացել գնել նույնիսկ ամենափոքր ծառը: Նրանց խնայած գումարը շատ չնչին էր: Ի վերջո որոշել էին վերջին օրը գնել վերջին եղևնին, որն անկասկած ավելի էժան կլիներ: Չէ՞ որ վաճառողը ետ չէր տանելու այն: Այդպես էր գրնոմներ անում և իրենց մայրը. օրվա վերջերին, երեկոները:*




*Մթնեց: Վաճառվեցին գրեթե բոլոր եղևնիները. իսկ երեխաները այդ ամբողջ օրը ընտրում էին լավագույնը դեռ չվաճառված եղևնիների մեջ: Հիմա մնացել է ընդամենը երեք ծառ: Անշարժ կանգնելով երեխաները, ցրտից, փայտացել էին: Կենդանությունը զգացվում էր միայն նրանց աշալուրջ աչքերում, որոնցով հսկում էին ամենափոքր եղևնուն:*

*Առանց միմյանցից խորհուրդ հարցնելու, նրանք որսացին մի հարմար մոմենտ և մոտեցան վաճառողին.*

*— Տվեք մեզ այս փոքր եղևնին, պարո՛ն,— ասաց տղան, որը հազիվ տասը տարեկան կլիներ և հագել էր մի հնամաշ և կարճ վերարկու: Աղջիկը ես, որն ավելի փոքր էր իր եղբորից, կրկնեց նույն խոսքերը.*

*— Վաճառեցեք մեզ այս փոքր եղևնին, պարո՛ն:*

*Կիսամուշտակ հագած բարձրահասակ վաճառողը, արդեն ծանոթ էր երեխաների կարողության հետ: Նրանք մի շաբաթ շարունակ դիմում էին նրան նույն պահանջով:*

*— Չեմ կարող, երեխանե՛ր, այդ գումարով՝ չեմ կարող,— ասաց նա:*

*Երեխաները հեռացան և կանգնեցին նախկին տեղում:*

*Վաճառողը նկատեց, բայց ոչինչ չասաց, ոչ էլ բարկացավ երեխաների համառության վրա:*

*Քիչ հետո երկու ուշացած հաճախորդ գնեցին մնացած երեք ծառից երկուսը, ու պատի տակ մնաց վերջին, փոքր եղևնին:*

*Հիմա երեխաները աչքերը լայն բաց արած, ուշադրությամբ հետևում էին փողոցում երևացող հատ ու կենտ անցորդներին, ճգնելով նրանց արտաքինից գուշակել նրանց մտադրությունը: Ամենակասկածելիները մուգ վերարկու*

հագած բարձրահասակ պարոններն էին և մուշտակ հագած գեր տիկինները։

Իսկ վաճառողը, որի կիսամուշտակի օձիքի միջից հազիվ էր երևում գլուխը, պահակի պես անցուդարձ էր անում վերջին եղևնու մոտ։

Երեխաները նորից մոտեցան նույն գծով, որի վրա դեռ մնացել էին նրանց ոտքերի հետքերը և շեշտակի նայեցին վաճառողի աչքերին։

— Չեմ կարող, երեխանե՛ր,— կրկնեց վաճառողը։

Նրանք վերադարձան և կանգնեցին իրենց նախկին տեղում։

Երևաց մի հարբած պարոն. շուռ ու մուռ տվեց տոնածառը, բայց չգնեց։ Եղևնին շատ էր ցանցառ ու փոքր։ Նա հեռացավ։

Հանկարծ վաճառողը նորից նկատեց երեխաներին եղևնու մոտ։ Նրանք մոտեցել էին բնազդաբար, եղևնին պաշտպանելու դրդված։

— Տուն գնացեք, երեխանե՛ր,— ձանձրացած ասաց նա,— ձեր ինչների՞ն է պետք եղևնին։ Դուք այնքան վատառողջ եք, որ մի անգամ նրա շուրջը դառնալուց հետո գլխապտույտ կունենաք։

Բայց զգաց, որ իր խոսքերը ոչ մի ազդեցություն չթողեցին երեխաների վրա։ Նրանք հեռացան և կանգնեցին նախկին տեղում։ Վաճառողը բորբոքվեց։ Շուկա հանելով եղևնիները, նա գիտեր, որ վերջին օրվա հաճախորդը, ինչ եղևնի էլ լինի, ինչպիսի արժեք էլ առաջարկի ինքը, միևնույն է, ստիպված է գնելու։ Բայց նա հասկանում էր, որ երեխաները ուզում էին էժան գնով ձեռք բերել վերջին եղևնին, եթե ուրիշ գնորդ չգտնվեր։ Նա գոռաց.

— Էյ, դուք, երեխանե՛ր... տուն կորեք իսկույն...

Ձյան պատնեշի ետևում երեխաները մի փոքր շարժում արեցին, բայց չհեռացան։

Վաճառողը մի քանի անգամ էլ անցուդարձ արեց, սպասելով գնորդների, բայց իզուր։ Զգաց, որ սառչում է։ Նա անհամբեր նայեց ժամացույցին։ Երեխաներից աղջիկը, նկատելով այդ, մտածեց որ վաճառողի ժամացույցի հետ ինչ-որ բան պետք է պատահած լինի, քանի որ նա չէր զգում, թե որքան ուշ է արդեն։ Բայց նա չկարողացավ որոշել, առաջ, թե՞ ետ է ընկել այն։ Նա շատ փոքր էր...

Վաճառողն ավելի էր բորբոքվում։ Կարծես այդ անտեղի անգործությունը կրճատում էր նրա վաստակը, իսկ հեռվում երեխաները դեռ համառում էին։ Նա մի քանի մեծ քայլ արեց և մոտեցավ նրանց։

— Դուք այդ ի՞նչ է, ուզում եք ծնկի՞ բերել ինձ, լակոտնե՛ր...— Բայց տեսնելով իր առաջ կանգնած անշարժ երեխաներին, ո-



րոնք չգիտես ցրտից էին այդպես փայտացել, թե համառությունից, նա վարանեց և վերադարձավ։ Ավելի լավ էր էժան գնով վաճառել եղևնին, քան դեն նետել այն։ Նա որոշեց մի քիչ էլ սպասել։

Սառը քամին, սահում էր սառած ձյան շերտի վրայով։ Երեխաները դժվարանում էին որևէ շարժում անել։ Ձյան մի քանի փաթիլ, որ նստել էր աղջկա քթին և թարթիչներին, ծիծաղաշարժ և անկենդան տիկնիկի տեսք էր տվել նրան։

Վաճառողը այլևս չկարողացավ համբերել։ Նա այնպես էր սառել, կարծես կիսամուշտակն ու տաք կոշիկները հանել էին նրա վրայից։ Նա կանչեց.

— Էյ, երեխանե՛ր...

Երեխաները մի պահ տատանվեցին, ապա կարծես պոկվելով սառած գետնից, մոտ վազեցին։

— Վերցրեք եղևնին...

Նա այդ ասաց հապճեպ, կարծես վախենալով, որ կարող է փոխել իր մտադրությունը։

Երեխաները սրտատրոփ վազեցին դեպի եղնիկը: Նրանք նույնիսկ մոռացան վճարելու գինը:

Ծառի վրայից, իրենց սառած ձեռքերով նրանք սկսեցին թափ տալ ձյունը, այնպիսի ընքշությամբ, կարծես մի չափազանց նուրբ և կենդանի էակի հետ գործ ունենային:

— Կացե՛ք...— հանկարծ լսվեց մանկական մի ճիչ:

Երեխաները սարսափած ետ նայեցին: Մայթի մոտ կանգնած մի շքեղ ավտոմեքենայից դուրս վազեց տաք հագնված մի երեխա:

— Այդ իմ եղնիկն է,— գոռաց նա:

— Բայց չէ՞ որ դու արդեն մեկն ունես,— ասաց մեքենայից իջնող պարոնը:

— Ո՜չ, ո՜չ,— բողոքեց երեխան,— նա տան համար է, ես ուզում եմ իմ անձնական եղնիկն ունենալ:— Ապա ձգելով եղնիկն, շարունակեց.

— Ետ վերցրեք ձեր տված փողը, իմ հայրիկը հարյուր անգամ ավելի կվճարի:

Հետո ամեն ինչ շատ արագ վերջացավ: Երեխաները սառած ձեռքերով երկար չկարողացան դիմադրել: Բացի այդ, նրանք վախեցան, որ կարող է քաշքշուկից կոտրվել եղնիկը: Մեքենավարը մի կողմ հրեց նրանց, խլեց եղնիկն և ճիպոտի պես իր ամուր և մեծ ձեռքում բռնած՝ քայլեց դեպի մեքենան: Իսկ պարոնը վաճառողին մեկնեց մի մեծ թղթադրամ:

Մեքենան հեռացավ տանելով եղնիկն:

Հեռացավ և բարձրահասակ վաճառողը: Նրա փոքր գլուխը՝ թաղված կիսամուշտակի օձիքի մեջ, հիմա բոլորովին չէր երևում:

Երկինքը բացվել և երևում էր նրա սառը կապտությունը:

Երեխաները դեռ կանգնած էին: Նրանք այլևս անելիք չունեին:

# ԱՆԽԱԽՏ ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅՈՒՆ

Վ. ԳՐԻԳՈՐՅԱՆ

Նկ. Կ. ՀԱՅԱԳՈՐԾՅԱՆԻ

1

Անտառապատ լեռան լանջից ճանապարհը ձգվում է դեպի ձորը. նա երբեմն թեքվում է դեպի ձախ, դեպի աջ, թեանցում բլուրներ, բարձր ժայռեր, ձորակներ, ամեն անգամ անցորդի առաջ բաց անելով մի նոր տեսարան:

Գեղեցիկ է այստեղ բնությունը: Ճանապարհի եզրերին աճել են տեսակ-տեսակ ծառեր և թփուտներ: Ամենից շատ աչքի է ընկնում մասրենին: Հետո վերջանում է անտառը, այստեղ-այնտեղ ցաք ու ցրիվ, իրարից մոտ ու հեռու կանգնած են վայրի խնձորենիներն ու տանձենիները:

Իմ ուշադրությունը գրավում է ձորը, արևոտ և գեղեցիկ ձորը, որտեղ երկարաձգվել է գյուղը: Դա Հայաստանի վերջին գյուղն է:

— Իսկ այն մյո՞ւսը,— հարցնում եմ ընկերոջս:

— Այդ գյուղը պատկանում է Ադրբեջանին:

— Այն գյուղը ինչպե՞ս է կոչվում...

— Ինչպես որ մերը...

— Նորի՞ց Արևշատ:

— Այո,— ասում է նա,— մեկը կոչվում է Հայկական Արևշատ, մյուսը՝ Ադրբեջանական:

2

Հայկական և Ադրբեջանական Արևշատների միջև եղած տարածությունը հազիվ երկու հարյուր մետր լինի: Այդ գյուղերը նման են իրար ոչ միայն իրենց արտաքինով, այլև կենցաղով, սովորույթներով: Նրանց հարևանությունը և բարեկամությունը դարերի պատմություն ունի: Բայց նրանք իսկական բարեկամներ դարձան Սովետական իշխանությունը մեզ մոտ հաստատվելուց հետո:

Երբ ադրբեջանական ժողովուրդը պայքարում էր իր ազատության համար, Հայկական Արևշատից մի քանի հայ երիտասարդներ մի հայ բոլշևիկի գլխավորությամբ գնացին նրանց օգնության: Եվ երբ Ադրբեջանական Արևշատի վրա փողփողաց կար-

միր դրոշը, հետևյալ օրը հայկական արև-շատցիները հայ բոլշևիկ Նահապետյանի ղեկավարությամբ կարմիր դրոշ բարձրացրին նաև իրենց գյուղում։

Մի քանի օրից հետո, ազատության և հայ ժողովրդի թշնամի դաշնակցականները օրը ցերեկով՝ Նահապետյանին գնդակահարեցին իր այգում, հրի մատնեցին նրա տունը, իսկ նրա կինն ու տասնամյա որդի Դավիթը ապաստան գտան Ադրբեջանական Արևշատում։ Դաշնակցության տեղական իշխանությունները մի քանի անգամ պահանջեցին Նահապետյանի ընտանիքը, որպեսզի նրա հետ դատաստան տեսնեն, բայց ադրբեջանական գյուղի սովետական նոր իշխանությունը բացեիբաց մերժեց լկտի պահանջը։ Այս դեպքից հետո, ավելի բարեկամացան այդ գյուղերը, իսկ երբ Հայաստանում հաստատվեց Սովետական իշխանություն, հայկական և ադրբեջանական արևշատցիները եղբայրացան։

Այդ բանն հիմա է՛լ ավելի ցայտուն է արտահայտվում։ Երկու գյուղի դպրոցականները շարունակ լինում են իրար հետ, խաղեր են կազմակերպում, այցելում են իրար տները, գնում են դաշտերը զբոսնելու։ Իսկ պիոներական կազմակերպությունները միասին նիստեր են գումարում, երգեցիկ խմբեր են կազմակերպում, տոներին ելույթներ ունենում թե այս և թե այն գյուղում։

Պիոներներ Խանլար Նաջաֆովը և Արշամ Նահապետյանը սիրում են իրար։ Նրանք մանկուց ընկերներ են, աչք են բացել թե չէ՝ տեսել են իրար, զգացել իրենց ծնողների փոխադարձ սերն ու հարգանքը, և իրենք էլ սիրել իրար։

Այդ պատանիները հանդիսանում են ռևոլյուցիոն պապերի՝ Հասան Նաջաֆովի և Սերոբ Նահապետյանի թոռները, որոնք հանուն իրենց ժողովրդի ազատության զոհվեցին սովետական իշխանություն հաստատելու համար։

3

Աշնանային մի արևոտ օր դասերից հետո Արշամն ու Խանլարը սարը բարձրացան։ Հասնելով անտառի եզրը, նրանք կանգ առան և նայեցին դեպի ներքև։ Ընդարձակ



ձորում նրանց առջև փռվել էին հայրենի գյուղերը։

— Արշամ,— երազկոտ ասաց Խանլարը։

Ընկերը նայեց նրա կողմը։

— Նայի՛ր, ի՜նչ գեղեցիկ են մեր գյուղերը։

— Նո՞ր ես տեսնում, Խանլար,— մտերիմ կշտամբանքով պատասխանեց Արշամը։

— Նոր չեմ տեսնում,— բայց նոր եմ հասկանում, Արշամ, որ այս գյուղերի համար զոհվեցին մեր պապերը, այս գյուղերի համար Հայրենական պատերազմից չվերադարձավ քո հայրը, իմ եղբայրը...

Խանլարը խոսքը կիսատ թողած նայեց ընկերոջը, մի պահ լռեց։

— Խանլար,— քիչ հետո խոսեց Արշամը։

— Լսում եմ, Արշա՛մ...

— Գիտես ի՞նչ եմ մտածում ես։

— Ասա...

— Ես ուզում եմ, որ ծառապատենք մեր գյուղերի, եթե ճիշտը կուզես մեր տների միջև եղած տարածությունը...

— Ի նշան մեր պապերի և մեր միջև եղած բարեկամության,— ավելացրեց Խանլարը։

Անցան ոգևորության առաջին րոպեները և ընկերները զգացին, որ այն, ինչ որ նրանք ուզում են ձեռնարկել, կապված է լուրջ դժվարությունների հետ։

Բաժանվելիս Խանլարը ասաց.

— Չհուսահատվես, դեռ կմտածենք այդ մասին։

— Ես ուզում եմ այդ բանն անենք, քանի դպրոցը չենք ավարտել, հետո ով գիտե...

— Կանենք, կանենք, Արշա՛մ,— ընկերոջը հուսադրեց Խանլարը։

4

Նրանց վերջին հանդիպումից անցել էր ընդամենը մի քանի օր... Արշամը դասերը պատրաստելուց հետո նստած ռադիո էր լըսում, մայրը նրա համար ձմեռվա գուլպաներ էր գործում։ Հանկարծ Արշամը վեր կացավ, առանց ռադիո-ընդունիչը փակելու արագ դուրս թռավ ու գնաց Խանլարի մոտ։ Խանլարի մայրը՝ Գյուլնազ մայրիկը վախեցած վեր թռավ, իսկ Խանլարը գիրքը մի կողմ դրեց և սպասում էր, թե ինչ պիտի ասի ընկերը։ Բայց նա միայն ժպտաց, որ նշանակում էր, թե մի անհանգստացեք և ինքը մոտեցավ և բաց արեց ռադիո-ընդունիչը, որը հաղորդում էր, 1948 թվի Սովետական կառավարության որոշումը դաշտապաշտպան անտառաշերտեր ստեղծելու մասին։

Խանլարը ամեն ինչ հասկացավ...

— Մենք կարող ենք հիմա էլ այդ աշխատանքը սկսել,— ասաց Արշամը,— նոյեմբերը դեռ առջևում է։

— Ինձ, որ մնա,— դանդաղ ասաց Խանլարը, ասես ցավելով, որ առարկում է ընկերոջը,— աշնանը չենք սկսի։ Մեզ հարկավոր է դեռ մտածել, նախապատրաստվել,



կարիք կլինի նաև խորհուրդներ լսել, բայց առայժմ մենք պետք է մեր մտադրությունը գաղտնի պահենք։

5

Կիրակի առավոտ է։ Գարնանային արևը դասարանի բաց պատուհաններից խուժել է ներս և խաղում է զույգ-զույգ նստած պատանիների գանգուրների և կարմիր վզկապների հետ։ Պիոներական ջոկատները Հայկական և Ադրբեջանական Արևշատներում նիստ են հրավիրել։ Նրանք քննարկում են երկու գյուղերն իրար հետ միացնող ճանապարհը կանաչապատելու հարցը։

— Երեխանե՛ր,— առույգ ձայնով սկըսում է իր խոսքը ավագ ջոկատավար Յուսուպ Ալիևը,— առաջարկություն կա գյուղի ճանապարհը ծառապատել մինչև հայկական գյուղի սահմանը։ Այս րոպեիս մեր հարևան գյուղի պիոներական ջոկխորհուրդը քննության է առնում նույն հարցը։

— Դա մեծերի գործն է,— սրտնեղած ասում է մի պիոներ, որ շտապում էր շուտ դուրս գնալ։

— Շատ լավ էլ մեր գործն է,— կուրծքն առաջ գցելով և լայն, թուխ դեմքին լրջություն տալով, առարկում է Ալիևը։

— Առաջարկությունը շատ լավ է,—

ձայն խնդրելով ասում է մի ուրիշը,— մենք նրանից հրաժարվել չենք կարող։ Քանի-քանի անգամ մտածել ենք, որ մի լուրջ գործ կատարենք, օգնենք կոլտնտեսությանը, քանի անգամ դիմել ենք կոլտնտեսության և գյուղսովետի նախագահներին մի հանձնարարություն ստանալու համար, բան դուրս չէր եկել։ Իսկ հիմա հրաշալի բան է, գործը կարծես իր ոտով է գալիս, ինչքան ասես անտառում ծառեր ու տնկիներ կան... գարունն էլ վրա է հասնում։— Նրա խոսքը ընդհատվում է բուռն ծափահարությամբ։ Այնուհետև բոլոր խոսողները իրենց ուրախությունը և ցանկությունն են հայտնում քննվող հարցի առթիվ և ժողովը վերջանալուց հետո իրար հրմշտելով թափվում դուրս։

6

Յուսուպը ժողովից հետո մի քանի պիոների հետ ուղիղ գնաց կոլտնտեսության նախագահի մոտ։

Կոլտնտեսության վարչության գրասենյակի դուռը հրեցին և ներս մտան։

Լիքը մարմնով, խոշոր դեմքով բազկաթոռի մեջ թաղված Քյարիմ Աբասովը զարմացած նայեց երեխաներին։

— Ինչ լավ է, Քյարիմ Էլիբեկովիչ, որ դուք այստեղ եք և մենակ, ձեզ հետ խիստ կարևոր գործ ունի մեր պիոներ-ջոկատը։

— Դեռ գարունը չեկած, էլի՞ սկսեցիք։ Հիմա պետք է ասեք՝ այս է պետք, այն է պետք, այս պիտի անենք, այն պիտի անենք...

— Քյարի՛մ Էլիբեկովիչ,— ժպտաց Յուսուպը,— ուրիշ բան պիտի ասեմ։

Նախագահը ձեռքի մատյանը մի կողմ դնելով լարեց ուշադրությունը։

Յուսուպը պատմեց Խանլարի առաջարկության և ջոկատի որոշման մասին։

Քյարիմը մի քանի րոպե լուռ, ձեռքի լայն ափով երեսն էր շոյում և ի վերջո ասաց։

— Լավ, գնա, մի բան կմտածենք։

Գործն այնպես դասավորվեց, որ երկու գյուղերի պիոներական կազմակերպությունները ծառապատման գործի մեջ քաշեցին ոչ միայն կոմերիտական կազմակերպություններին, այլ և երկու գյուղերի կոլտնտեսականներին։

Առավոտ վաղ, դեռ արևը չծագած, երբ դեռ սառած էր գետինը, սկսվեց ծառապատման աշխատանքը։ Երկու գյուղերի կոլտնտեսականները ձեռնամուխ եղան աշխատանքին։ Մի մասը ճանապարհի երկու եզրերին փորում էին փոսեր ծառերի համար, մի մասը դալար տնկին արմատով զգույշ հանում անտառում և մի մասն էլ բերում էր տնկիները։

— Ոչինչ, տնկիները կկանաչեն,— հորդորում էր պիոներներին Սենեքերիմ բիձան,— դեռ նրանք քնած են, իսկի չեն էլ իմանա իրենց տեղափոխման մասին, ոնց որ քնած երեխային մի թախտի վրայից վերցնես և դնես մյուսի վրա։ Համերաշխ աշխատանքը տևեց մինչև ժամի երկուսը։ Երկու կողմից տնկիները միացան իրար։ Վերջին տնկիները ավելի մոտ տնկվեցին. իրենց ձեռքով փոսի մեջ իջեցրին Արշամն ու Խանլարը։

— Այ ապրե՛ք,— ասաց Սենեքերիմը, որ ուշադիր դիտում էր նրանց։

— Այդ երկու ծառերը դուք եք, այդպես իրար հարազատ և իրար մոտիկ։ Միշտ այդպես սիրով լինեք զավակներս և միշտ մեր ժողովուրդներին աշխատեք ավելի մոտեցնեք իրար, ինչպես այսօրվա գեղեցիկ գործով։

Այն օրից անցել են տարիներ։ Հայկական և Ադրբեջանական գյուղերը՝ երկու Աբեշատները կանաչ ծառուղիով միացել են իրար։ Հեռվից՝ ձորի վերևից նայելիս թվում է, թե այդ գյուղերը պարզել են իրենց կանաչ թևերը և ողջունում են իրար։ Այդ կանաչ ծառուղին շարունակ լիքն է մարդկանցով։ Նստում են այդ ծառերի տակ, զրուցում, հանգստանում ադրբեջանցի և հայ ծերունիները աշխատանքից հետո և տոներին։ Շքեղ մայիսի 1-ին, հավաքվում են այստեղ, խոսում, ուրախանում, խաղաղության և եղբայրության վերաբերյալ ճառեր ասում, իսկ երեխաները բաց են թողնում ձյունաթև աղավնիներ։

Առօրյա կյանքում, շատ հաճախ, այդ ծառուղիում լսվում է պիոներական թմբուկի աշխույժ ձայնը։

# ՍՏԱԼԻՆՅԱՆ ՈՒՐԱԼՈՒՄ

Գ. ԱՐԵՎՅԱՆ

Նկ. ԱՆ. ՋՈՐՊԱՋՅԱՆԻ

*Հարուստ է Ուրալի ընդերքը: Այդ հարստությունները դեռ Պետրոս առաջինի ժամանակներից էին օգտագործվում: Անհատնում երկաթի, պղնձի, ոսկու, պլատինի, ալումինի, գունավոր և թանկագին քարերի, ածխի, նավթի, աղի և այլ պաշարներ են թաքնված այնտեղ:*

*Սովետական իշխանության օրոք Ուրալի հարստություններն անցան ժողովրդին: Մեկը մյուսի ետևից ծնունդ առան նոր հանքեր ու գործարաններ, ֆաբրիկաներ ու էլեկտրակայաններ: Իսկ 1935 թվականի մայիսի 15-ին մեր պարտիան ընդունեց պատմական որոշում՝ Սովետական Միության արևելքում ստեղծել երկրորդ հզոր ածխամետալուրգիական բազան: Ստալինյան հանճարեղ մտահղացմամբ շարք մտան տասնյակ, հարյուրավոր ձեռնարկություններ՝ խախտելով դարավոր տայգայի և լեռների հանդարտ նիրհը:*

*Ստալինյան Ուրալի կենտրոնը՝ Սվերդլովսկն իր հզոր գործարաններով ու ֆաբրիկաներով, կուլտուրայի պալատներով, իր սքանչելի զբոսավայրերով, տասնմեկ-տասներկու հարկանի բազմաթիվ շենքերով՝ փռված է Ուրալյան լեռնաշղթայի արևելյան լանջին:*

*Քաղաքի թանգարաններից մեկում ես տեսա նկարներ, որոնցում պատկերված է Ուրալի բանվորների դժոխային աշխատանքը ցարական ինքնակալության ժամանակ: Մթին հանքուղիներ, հանքաքարերով լեցուն քթոցները շալակներին բանվորները տնքալով խարխափում են հանքի լաբիրինթոսում... Բայց դրա կողքին՝ այսօրվա Ուրալի հանքերն են՝ էլեկտրիֆիկացված, մեքենայացված, աշխատանքի հիանալի պայմաններով:*



*Սվերդլովսկի ամենամեծ հրաշալիքն է Օրջոնիկիձեի անվան Ծանր մեքենաշինության գործարանը՝ Ուրալմաշը: Այս գործարանը աշխարհի ծանր մեքենաշինության ամենախոշոր ձեռնարկություններից մեկն է: Նրա մի ծայրից նայելիս մյուս ծայրը հազիվ է նշմարվում: Ուրալմաշը մի խոշոր սոցիալիստական քաղաք-գործարան է իր պողոտաներով, փողոցներով, ակումբներով, կուլտուրայի տներով, կանաչ ու հովասուն զբոսայգիներով, ֆիզկուլտ-հրապարակներով, ստադիոնով, գրադարաններով... Այստեղ ամեն ցեխ մի առանձին ձեռնարկություն է:*

*Հզոր այս գործարանում գործում են դոմենյան, մարտենյան, կոքսային հնոցներ, հզոր վերամբարձներ, մինչև 10 հազար տոննա ուժանոց հիդրավլիկ և պնևմատիկ մուրճեր ու մամլակներ: Այդ մուրճերը, երբ երեք անգամ հարվածում են կես մետր հաստությամբ շիկացած երկաթասալին, երկաթը թիթեղի հաստություն է դառնում: Այստեղ, այս ցեխերում են արտադրվում դոմենյան և մարտենյան հնոցների սարքեր, գլանող հզոր հաստոցներ, հորափոր մեքենաներ, սև մետաղագործության, լեռնային և նավթային արդյունաբերության համար անհրաժեշտ մեքենաներ ու գործիքներ, գործարանային խոշոր՝ ավելի քան հարյուր տոննանոց աղացներ, վիթխարի քարշակներ, վերամբարձ հարմարանքներ, էքսկավատորներ: Այստեղ են արտադրվում աշխարհում ամենահզոր՝ 1200 տոննանոց քայլող էքսկավատորները, որոնք այժմ աշխատում են կոմունիզմի կառուցումներում:*

*Հիմա, այս օրերին ուրալմաշցիները կատարում են Կույբիշևյան և Ստալինգրադյան՝*

աշխարհում հզորագույն հիդրոկայանների պատվերները։

Ուրալմաշը հպարտանում է իր մարդկանցով, որոնք կառուցել են գործարանը և այժմ էլ աշխատում են այնտեղ։

Ահա նրանցից մեկը՝ Վիկտոր Պոնոմարյովը։

Նա մեխանիկական ցեխերից մեկումն է աշխատում։ Պոնոմարյովը հայտնի է ողջ Միությունում։ Նա մեքենաների ատամնանիվների հատման ու մշակման նոր մեթոդ է կիրառել։ Ամեն տարի նա կատարում է վեց մարդու նորմա, աշխատում է հինգ հաստոցի վրա։ Ստալինյան չորրորդ հնգամյակում նա կատարեց 30 տարվա նորմա։ Այժմ նա պարտավորվել է Ստալինյան հինգերորդ հնգամյակում էլ 30 նորմա կատարել։ Վ. Պոնոմարյովը Ստալինյան մրցանակի լաուրեատ է։

Իրավացի է ցեխի պետը, որ ասում է.

— Ուզո՞ւմ եք իմանալ, ամբողջ Միության մեջ այդպիսի ատամնահատ խառատ չկա, հետևապես՝ ամբողջ աշխարհում չկա։

Ճիշտ է, բազմահազար մարդիկ են հնգամյակում կրկնակի, նույնիսկ եռակի նորմա կատարողները, բայց 5 տարում 30 տարվա առաջադրանք կատարող չկա։

Պոնոմարյովը հազիվ 40 տարեկան է, ունի միայն 20 տարվա արտադրական աշխատանքի ստաժ, բայց ահա կատարել է մոտ յոթանասուն տարվա նորմա...

— Պոնոմարյովը երկու ամսում մեկ տարվա նորմա է կատարում,— հպարտությամբ ասում են ընկերները։ Նա Սվերդլովսկի քաղաքային Սովետի դեպուտատ է։ Զեկուցումներ է կարդում ստախանովականների հավաքում և ինստիտուտում, թղթակցում է «Ուրալսկի Ռաբոչի» թերթին։ Երկրի շատ ուրիշ գործարանների ատամնահատ խառատներ հետևում են նրա օրինակին։ Միայն Ուրալմաշում 1180 հաստոցի վրա այդպիսի աշխատողներ կան։

***

Ուրալում մենք ծանոթացանք մի հզոր հաստոցի։ Դա մի ամբողջ ցեխ է գրավել, որի մի ծայրից մյուսը չի երևում։ Ռելսահեծանային հաստոց, ահա նրա անվանումը։ Կշիռը՝ 18 հազար տոննա։ Միայն սրան սպասարկում են 1200 մոտոր։ Գործում են հազարավոր ու տասնյակ հազարավոր մեխանիզմներ, պտտում են թափանիվները։ Հրաշեկ ռելսը դուրս է գալիս նրա միջից։ Տասնյակ «ձեռքեր» այս ու այն կողմից պահում են կարմիր մետաղը, որ չծռվի։ Այդ «ձեռքերը» մեխանիզմներ են։ Ահա, սղոցը մոտենում է ռելսը կտրելու։ Մի «ձեռք» մոտեցնում է այն և մինչև առաջին կայծերի հետ կթարթես աչքերդ՝ կտրված է ռելսը։ Ամեն ինչ այստեղ մեխանիզմներն են կատարում։ Միայն հեռվում, շատ հեռվում իր ապակեծածկ խցիկում նստած, դիսպետչերը ղեկավարում է այս բոլոր գործողությունները։ Նա ձեռքով մերթ այս, մերթ այն կոճակն է սեղմում և մեխանիզմները կատարում են իրենց աշխատանքը։

Այդ հաստոցի հեղինակը ուրալմաշցի Գեորգի Խիմիչն է։

Երբ ես հեռացա Ուրալմաշ գործարանից, ինձ թվում էր, թե եղել եմ մի մեծ քաղաքում...

Գեղեցիկ են Ուրալի Նիժնի Տագիլ, Կրասնոուրալսկ, Սերով և շատ ուրիշ քաղաքները։ Եղա Ուրալվագոնագործարանում, տեսա վագոնի ծնունդը, իջա 3-րդ Ինտերնացիոնալ հանքը, բարձրացա Վիսոկայա սարը, որը ամբողջությամբ ինքնածին հանք է և որի շուրջը կառուցված մի շարք գործարաններ սնվում են նրա արտադրանքով։

Նորից գնացքը սուրալով անցնում է Ուրալյան լեռնաշղթայի վրայով։ Կեչիների սպիտակ բները, սոճիների ու եղևնիների սլացիկ կատարները վերադարձի ճանապարհին մեզ են ողջունում։



# ՌՈՒՍ ԺՈՂՈՎՐԴԻ ՄԵԾ ԲԱՆԱՍՏԵՂԾԸ

(Նեկրասովի մահվան 75-ամյակի առթիվ)

Լ. ԱՍՄԱՐՅԱՆ
(Ֆիլոլոգիական գիտ. թեկնածու)

Նկ. ԱՐ. ԶԱՔԱՐՅԱՆԻ

Գրեշնյովո գյուղն ընկած էր ռուսական մեծ գետի՝ Վոլգայի ափին։ Նիկոլայ Ալեքսեևիչ Նեկրասովի վաղ մանկության հիշողությունները կապված են Գրեշնյովոյի հետ։ Նա երեք տարեկան էր, երբ 1824 թվին նրանց ընտանիքը իր ծննդավայրից՝ Ուկրաինայից տեղափոխվեց Յարոսլավլի նահանգի այդ խուլ անկյունը։ Դա նրա հոր կալվածքն էր։

Երեխան մեծանում էր մի վայրագ բռնակալի ընտանիքում։ Հայրը, նախկին սպա, հետագայում կալվածատեր, չափազանց կոպիտ մի մարդ էր։ Նա վատ էր վարվում ճորտ գյուղացիների հետ, ամեն օր, չնչին առիթով ծեծում էր նրանց։ Նա կոպիտ և դաժան էր նաև ընտանիքում։ Նեկրասովի մխիթարությունն ընտանիքում մայրն էր։ Մայրը բարեկիրթ կին էր։ Նա սիրում էր իր երեխաներին և ուզում էր, որ նրանք լավ մարդիկ դառնան։



Շուտով Նիկոլային ուղարկեցին Յարոսլավլի գիմնազիան սովորելու։ Արձակուրդներին նա միշտ գյուղ էր գալիս։ Նա դեռ փոքրուց սիրում էր գյուղի երեխաներին և մտերիմ էր նրանց հետ։ Գյուղ վերադառնալով նորոգում էր իր բարեկամությունը։ Հայրը տանել չէր կարողանում որդու և գյուղացի երեխաների մտերմությունը։ Բայց Նիկոլայը շատ անգամ թաքուն էր դուրս գալիս տնից։ Նիկոլայը սիրում էր բնությունը։ Նա օրերով թափառում էր դաշտերում, մարգագետնում, անտառներում, գնում էր գետը ձուկ որսալու։ Նա շատ էր սիրում որսորդությունը։

Նեկրասովն ամուր կամքի տեր էր։ Նա ոչ մի դժվարությունից չէր վախենում։

Գիմնազիայի 5-րդ դասարանից հայրը Նեկրասովին տուն բերեց։ Երկու տարի հետո, 1838 թվին, նրան ուղարկեցին Պետերբուրգ։ Հոր կամքով Նիկոլայը պետք է մտներ Ազնվականական գունդ և զինվորական դառնար։ Բայց Նեկրասովը հոր կամքին հակառակ գնաց, ընդունվեց համալսարան, որպես ազատ ունկնդիր։ Հայրը խիստ զայրացավ որդու արարքի վրա և խզեց նրա հետ բոլոր կապերը։

Նեկրասովը Պետերբուրգում մնաց մենակ։ Համալսարան հաճախելուց երկու տարի հետո նա հեռացավ այնտեղից։ Նա հենց Պետերբուրգ գալու առաջին օրից կյանք էր մտել։ Ծանր էր այդ կյանքը, լի զրկանքներով ու դառնություններով։ Նա ապրուստի ոչ մի միջոց չուներ։ «Ուղիղ երեք տարի, պատմում է Նեկրասովը,— ես ինձ մշտապես, ամեն օր քաղցած էի զգում»։

Նա սկսեց գրել։ Ճիշտն ասած, նա շատ վաղ էր սկսել գրելը։ Յոթնամյա տղան իր առաջին ոտանավորը նվիրել է մորը։ Գիմ-

նազիայում սովորելու ժամանակ արդեն գրում էր սատիրական ոտանավորներ, էպիգրամներ ուսուցիչների և ընկերների մասին։ Բայց այժմ նա եռանդով էր գրում։ Իր բանաստեղծությունները նույնիսկ տարավ ռուս հայտնի բանաստեղծ Ժուկովսկու մոտ։ Ժուկովսկին մի քանի օր հետո վերադարձրեց այդ գործերը։ Նա հավանել էր միայն երկու բանաստեղծություն։ Մյուսների մասին Նեկրասովին հայտնում էր. «Եթե ուզում եք տպագրել, ապա հրատարակեցեք առանց անունի, հետագայում դուք ավելի լավ կգրեք և կամաչեք այդ տողերի համար»։

Նա գրեց ուրիշ գործեր էլ՝ բանաստեղծություններ, պիեսներ, պատմվածքներ, հոդվածներ։ Նա շատ էր աշխատում, կատարում էր ամեն մի սարսափելի գործ, բայց դարձյալ վատ էր ապրում։

Այդ տարիներին Նեկրասովը մտերմացավ ռուս ռևոլյուցիոն դեմոկրատ, մեծ քննադատ Բելինսկու հետ։ Երբ մի անգամ նա իր բանաստեղծություններից մեկը կարդաց Բելինսկու մոտ, Բելինսկին գրկելով նրան ասաց.

— Իսկ գիտե՞ք արդյոք, որ դուք բանաստեղծ եք և ճշմարիտ բանաստեղծ։

Բելինսկին խրախուսում էր բանաստեղծին։ Նրա ազդեցությունը մեծ էր Նեկրասովի վրա։ «Ամեն ինչով նրան եմ պարտական», ասում էր Նեկրասովը Բելինսկու մասին։

1846 թվին Նեկրասովը գրող Պանաևի հետ սկսեց հրատարակել «Սովրեմեննիկ» ամսագիրը, որ հիմնել էր Պուշկինը դեռ տաս տարի առաջ։ Ամսագրի շուրջը խմբվեցին ժամանակի ամենաառաջավոր մարդիկ։ Այնտեղ իր հոդվածներն էր տպագրում Բելինսկին։ Բելինսկուց հետո ամսագիր եկան ռևոլյուցիոն դեմոկրատներ Չերնիշևսկին և Դոբրոլյուբովը։ Նրանք բոլորն էլ մտածում էին ժողովրդին ազատել ցարի ու կալվածատերերի լծից, վերացնել ճորտատիրությունը Ռուսաստանում։ Նրանք հավատում էին, որ Ռուսաստանում ռևոլյուցիա կլինի։

Նեկրասովը ռևոլյուցիոն մտածողների շարքում էր քայլում։ Նա, ինչպես իր ընկերները, աշխատում էր ժողովրդի ազատագրման համար։ Նա այսպես էր մտածում իր մասին.

Բանաստեղծ կարող ես դու չլինել,
Բայց քաղաքացի լինել պարտավոր ես։

Եվ նա կատարում է իր քաղաքացիական պարտքը։ Նա գրում է միայն և միայն ժողովրդի կյանքի մասին։

1846 թվին նա գրեց «Հայրենիք» հռչակավոր բանաստեղծությունը։ Նեկրասովը դրա մեջ նկարագրում էր ճորտատեր ազնվականների անմիտ և դատարկ կյանքը, նրանց քեֆերը և շռայլությունները։ Նա ատելություն էր արթնացնում դեպի սարկությունը և բռնակալությունը։

«Խոհեր շքամուտքի առաջ» բանաստեղծության մեջ Նեկրասովը ցավով ու կարեկցությամբ էր նկարագրում ռուս ճորտ մուժիկներին։

Գյուղացու թշվառ վիճակի ամբողջ պատկերը երևում է նաև «Չհնձած արտ», «Սառնամանիք, կարմիր քթիկ», «Գյուղական նորություններ», ինչպես նաև «Ովքեր են Ռուսաստանում լավ ապրում» մեծ պոեմում։ Այստեղ նա սպանիչ ծաղրով ծաղրում է կալվածատերերին և պաշտպանում ժողովրդին։

Նեկրասովը ցույց է տալիս «Մոռացված գյուղի» մարդկանց։ Պառավ Նենիլան խրճիթը վերանորոգելու համար փայտ է ուզում, վերակացուն մերժում է։ Նենիլան սպասում է, թե տերը կգա և իր խնդիրը կկատարի։ Կամ՝ մի ագահ, գյուղացիների հողը կտրում է։ Նրանք մտածում են, թե տերը կգա, հողը կխլի ագահից և կտա իրենց։

Բայց Նենիլան մեռնում է, գյուղացիները թշվառանում։ Տերը չկա ու չկա։ Մի օր էլ նրան բերում են դագաղով։ Նրա ետևից քայլում է նոր տերը. նա չի էլ հետաքրքրվում այդ մոռացված անկյան կյանքով, թողնում և հեռանում է Պետերբուրգ...

Նեկրասովը ուզում է ժողովրդին հասկացնել, որ ոչ մի տեր էլ չի լավացնի նրա դրությունը։ Տերերը ինքնասեր են, նրանք շատ անտարբեր են ժողովրդի ցավերի ու կարիքների հանդեպ։

Նեկրասովը քնքուշ և հուզական բանաստեղծություններ է նվիրել ռուս երեխաներին։ Նրանց ճնշում է դաժան հոգսը և ուժից վեր աշխատանքը։

Ո՞ւմ հիշողության մեջ չի մնում մատնա-

*չափ վեց ամյա փոքրիկ գյուղացին, ոչխարի կիսամուշտակ, մեծ կոշիկներ և մեծ ձեռնոցներ հագած աշխատավորը։ Երեխաների մասին գրված լավագույն գործերից է «Դըպրոցականը»։ Այստեղ էլ Նեկրասովը պատմում է, թե ինչպես ռուս գյուղացին իր վերջին կոպեկներն է ծախսում երեխային կրթության տալու համար։ Նա լավ մարդ կդառնա, կաշխատի հայրենիքի համար։*

*Նեկրասովի հոր կալվածքի մոտով էր անցնում Սիբիր տանող ճանապարհը։ Նեկրասովն ամեն օր տեսնում էր տաժանակրության դատապարտված մարդկանց անծայր շարքերը։ Նրանք քայլում էին շղթայակապ ձեռքերով ու ոտքերով։ Այդ ամենը ատելությամբ էր լցնում Նեկրասովի սիրտը տիրող ցարական կարգերի նկատմամբ։*

*Շատերն են տեսել հանճարեղ Ռեպինի «Բուռլակները Վոլգայի ափին» նկարը։ Այնտեղ երևում է արևահար, քրտնաթոր ցնցոտիների մեջ և ուժասպառ մարդկանց խումբը, որ լծվել է ու քաշում է նավը։ Ահա այդ ցնցող կյանքի նկարագիրն ենք տեսնում և Նեկրասովի «Վոլգայի վրա» բանաստեղծության մեջ։*

*Նեկրասովը ջերմ սիրով էր սիրում հայրենի Ռուսաստանը և նրա ժողովրդին։ Նա ցավով է հիշում, որ ժողովրդի հազարավոր կյանքեր են կործանվել երկաթուղագիծ կառուցելու ժամանակ («Երկաթուղին»)։ Բայց նա չի ընկճվում։ Նա գտնում է, որ ռուս ժողովուրդը, ռուս մարդը կտանի ամեն ճնշում ու շահագործում և կհաղթի.*

*Կտանի բոլորը և լայն ու պայծառ*
*Ճամփա կբացի կրծքով իր համար։*

*Նա հավատում էր, որ ժողովուրդը ձեռք կբերի իր երջանկությունը և ազատությունը։*

*Մեծ էր Նեկրասովի բանաստեղծությունների և հատկապես «Երկաթուղին» բանաստեղծության նշանակությունը իր ժամանակի համար։ Ահա թե ինչ է պատմում այդ մասին ռուս առաջին մարքսիստ Պլեխանովը. «Ես այն ժամանակ ռազմական գիմնազիայի վերջին դասարանումն էի։ Մենք նստել էինք ճաշից հետո մի քանի մարդուց բաղկացած խմբով և կարդում էինք Նեկրասովին։ Հազիվ էինք մենք վերջացրել «Երկաթուղին», հնչեց ազդանշանը, որը կանչում էր մեզ ռազմական ուսուցման։ Մենք ծածկեցինք գիրքը և գնացինք դեպի զինարան, հրացանների ետևից, գտնվելով մեր հենց նոր կարդացածի ուժեղ տպավորության տակ։ Երբ սկսեցինք շարվել, իմ բարեկամ Ս-ն մոտեցավ ինձ, և ձեռքում սեղմելով հրացանի փողը, շշնջաց. «Էխ, կվերցնեի ես այս հրացանը և կգնայի կռվելու ռուս ժողովրդի համար»։*



*1846 թվին նա գրեց «Օրորոցի երգը»։ Այդ երգում Նեկրասովը ցույց էր տալիս ժողովրդի վզին նստող նոր ցեցի դեմքը։ Նա լինելու է կաշառակեր, պնդաճակատ, քծնող, մեծերի առաջ օձի նման սողացող։*

*Դու կլինես չինովնիկ տեսքով*
*Եվ հոգով սրիկա։*

*Նեկրասովը կծու ծաղրով մտրակում էր Նիկոլայ առաջինի ապազգա չինովնիկներից մեկին։ Այդ ժամանակները Ռուսաստանի համար ծանր էին։ Ցարի կողմնակիցները լրտեսում էին առաջավոր գրողներին ու մըտածողներին։ Պուշկինին հալածողներից մեկը, ցարի լրտես Բուլգարինը գրում է ոստիկանությանը. «Նեկրասովը ամենահանդուգն կոմունիստն է»։*

*Նեկրասովի կյանքը շատ թանկ էր ռուս ժողովրդի համար, որովհետև նա ասում էր ճշմարտությունը կյանքի մասին։ Չերնիշևսկին Նեկրասովի մահից մի քանի օր առաջ Սիբիրից գրում էր իր բարեկամներից մեկին. «Նրա (Նեկրասովի) փառքը կլինի անմահ, որ հավերժ է Ռուսաստանի սերը նրա՝ ռուս բանաստեղծներից հանճարեղագույնի հանդեպ։ Ես ողբում եմ նրա համար»։*

*Նեկրասովը մեռավ 1878 թվականի հունվարի 8-ին։ Թաղման օրը դաժան սառնամանիք էր։ Բայց հազարավոր մարդիկ էին եկել։ Դագաղի վրա գրված էր «Սոցիալիստներից» մակագրությունը կրող պսակը։ Ոստիկանությունը ուզում էր վերցնել դա։ Բայց ռուս ռևոլյուցիոն երիտասարդությունը զինված պաշտպանում էր պսակը։*

*Նեկրասովի մահվանից անցել է 75 տարի։ Այսօր էլ սովետական ժողովուրդը սիրով ու հարգանքով է հիշում իր մեծ զավակին՝ Նիկոլայ Ալեքսեևիչ Նեկրասովին։*



# ՉԸՀՆՁՎԱԾ ԱՐՏԸ

Ն. Ա. ՆԵԿՐԱՍՈՎ

Նկ. Լ. ԽԱՆԱՄԻՐՅԱՆԻ

Աշուն է խորին. հավքերն են չվել,
Անտառը մերկ է, հանդն է դատարկվել,
Միայն չըհնձված մի արտ կա ահա…
Տխուր խոհեր է առաջ բերում նա:
Հասկերը միմյանց ասում են կարծես.
«Տխուր է լսել քամու երգը մեզ,
Տխուր է մինչև գետին կռանալ,
Լի հատիկները փոշու մեջ շաղ տալ:
Կոցահարում է մեզ ամեն գիշեր,
Երամն հավքերի չվող, շատակեր,
Ճագարը ճզմում, հողմն է վնասում,
Ո՞ւր է երկրագործն, ո՞ւմն է սպասում.
Մի՞թե ուրիշից վատ ենք մենք աճել,
Լցվել համերաշխ և հասկակալվել:
Ոչ, վատ չենք երբեք և վաղուց ի վեր
Հասել, լցվել են հատիկները մեր:
Մի՞թե հենց նրա համար ցանեց մեզ,
Որ աշնան քամին ցրիվ տա այսպես»:
Պատասխան բերեց քամին տխրամած.
— Ձեր երկրագործի ուժն է սպառված:
Գիտեր, թե ինչու վարեց ու ցանեց,
Բայց իր ուժերից մեծ գործ վերցրեց:
Շատ վատ է խեղճը, չի խմում, ուտում,
Որդն է բուն դրել իր հիվանդ սրտում:
Ձեռքերը, որոնք ակոս են շարել,
Կախվել ոնց մտրակ, տաշեղ են դառել:
Աչքերը մարել ու ձայնն էլ այն չէ,
Որ մի ժամանակ տխուր է հնչել,
Երբ սերմնացանը իր փոքրիկ արտում,
Արորին հենված քայլել է տրտում:

Թարգմ. ՄԿՐՏԻՉ ԿՈՐՅՈՒՆ



# ՓՈՔՐԻԿ ԳՅՈՒՂԱՑԻՆ

Ն. Ա. ՆԵԿՐԱՍՈՎ

Նկ. Մ. ՍԵԴՐԱԿՅԱՆԻ

Մի անգամ ձմռան եքեքան ցրտին
Անտառից ելա՝ սաստ սառնամանիք.
Տեսա՝ անտառից դեպի սարնիվեր
Դանդաղ գալիս է ձին՝ ցախը բարձած:
Ընկած առաջը տղամարդու պես
Քաշում է սանձը մի փոքրիկ տղա՝
Մեծ կոշիկներով, մուշտակը բրդոտ,
Ձեռնոցները մեծ, ինքը բիզ ու կես:
— Բարև՛, տո մեծ մարդ:
«Գնա՛ քո ճամփեն»:
— Դու շատ խիստն ես, ինչպես տեսնում եմ:
Որտեղի՞ց ցախը...
«Իհարկե՝ մերուց. հայրս, լսո՞ւմ ես,
Կտրում է այնտեղ, ես էլ կրում եմ»:
— Է՜, ի՞նչ, շա՞տ մեծ է ձեր ընտանիքը:
«Այո՛, փոքր չէ, բայց տղամարդիկ
Միայն երկուսս ենք՝ հայրս և ես»:
— Ա՜յ թե բանն ինչ է:
Անո՞ւնդ:— «Պողոս»:
— Տարիքդ քանի՞ս է:— «Վեցս անցել է»:
«Դե՜, ջանս», գոչեց փոքրիկը ձիուն,
Թափ տվեց սանձը և արագ քայլեց:

Թարգմ. ԽՆԿՈ ԱՊԵՐ



# ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ




1952 թ. դեկտեմբերի 12-ին Ավստրիայի մայրաքաղաք Վիեննայում բացվեց խաղաղության պաշտպանության ժողովուրդների կոնգրեսը: Ամերիկյան և անգլիական իմպերիալիստները շատ ջանք թափեցին խանգարելու կոնգրեսի կազմակերպումը: Նրանց այդ չհաջողվեց: Աշխարհի բոլոր ծայրերից՝ հազար ու մի դժվարություն հաղթահարելով, Վիեննա են հավաքվել տարբեր ժողովուրդների ու տարբեր կազմակերպությունների ներկայացուցիչներ:

Կոնգրեսի մասնակիցների ելույթները և հանդես բերած միասնականությունը ցույց են տալիս, թե ինչպես օր-օրի վրա աճում են խաղաղության կողմնակիցների շարքերը և ինչպես ամրապնդվում են նրանց դիրքերը իրենց ժողովուրդների մեջ:

Խաղաղության համար մղվող պայքարում մեծ դեր են կատարում հազարավոր երիտասարդ տղաներ ու աղջիկներ: Մենք այստեղ բերում ենք նրանցից մի քանիսի ելույթներից ու նամակներից մեջբերումներ, որոնք պատմում են երիտասարդների մղած պայքարի և իրենց ցանկությունների մասին:

### Ուսանողների խոսքը

*«Մենք ուզում ենք հրացանի փոխարեն բեյզբոլի լախտ ունենալ, նռնակի փոխարեն՝ ֆուտբոլի գնդակ, մենք ուզում ենք տներ կառուցել, փոխանակ մեզ նման երիտասարդներ սպանելու», գրել է Վանկուվերի դպրոցների ուսանողական խորհրդի նախագահ Էլ Ջարվիսը:*

### Կանադացի ջութակահարը

*«Ես ոչ միայն ժողովրդականացնում եմ երաժշտությունը, այլ միաժամանակ տարածում եմ խաղաղության գաղափարը, քանի որ միայն խաղաղ իրադրության մեջ կարող են գոյություն ունենալ այն բոլոր գեղեցիկ բաները, որոնք ես սիրում եմ: Մենք երիտասարդ կանադացիներս առաջին հերթին կկրենք պատերազմի արհավիրքները՝ մենք ստիպված կլինենք մեր կյանքը զոհել պատերազմին»:*




Համամիութենական մանկական գեղարվեստական VI ցուցահանդեսին 14-ամյա Թամարա Զայցևվայի ներկայացրած «Խաղաղությունը կհաղթի պատերազմին» քանդակը:

### Ամենագեղեցիկն ու ամենաթանկագինը

Խաղաղության անվեհեր մարտիկ Պիտ վան Ստավերենը, որը Ինդոնեզիայի ազատասեր ժողովրդին օգնելու համար հոլանդական կառավարության կողմից դատապարտվել է 7 տարի բանտարկության, գրել է բանտից. «Ձեր բոլոր ուժերը տրամադրեք այն բանին, որպեսզի մենք կարողանանք ստանալ այն ամենագեղեցիկն ու ամենաթանկագինը, որը կարելի է երբևէ ունենալ՝ խաղաղություն ամբողջ աշխարհում»:

### Պատերազմի սարսափները

Ֆիատայի գործարանի աշակերտները խաղաղության Ավստրիական խորհրդին գրել են.

«Մեր գործարանի 67 աշակերտներից 12-ը անցած պատերազմում կորցրել են իրենց հորն ու մորը: Իրենի հայրերը ծանր վիրավորվել են: Մարտերում ընկել են այդ աշակերտների 42 եղբայրները, իսկ 16-ի ընտանիքները ռմբակոծության ժամանակ մնացել են ավերակների տակ: Ահա այս է մեր հաշիվը: Մենք չենք ուզում նորից ապրել պատերազմի այդ սարսափները»:

### Սպորտի առաջավոր մարդիկ

*Ամերիկայի գազանաբարո ղեկավարները հայտարարում են, որ «ամեն մեկը պետք է սովորի սպանության արվեստը»: Այս նպատակի համար նրանք օգտագործում են նաև սպորտը: Սակայն Ամերիկայի սպորտի առաջավոր մարդիկ պայքարում են խաղաղության համար՝ ընդդեմ սպորտային կազմակերպությունների ռազմականացման, ընդդեմ նոր սերունդը վարձկան մարդասպաններ դաստիարակելուն:*

*«Մենք գտնում ենք,— գրում են նրանք,— որ պատերազմը ամերիկյան ժողովրդին ոչ մի լավ բան չի բերի: Պատերազմից կարելի է խուսափել, մինչդեռ մեզ հրամայում են բանակ գնալ և պատերազմել կորեացիների դեմ: Բայց կորեացիները, ինչպես և մենք, խաղաղ կյանք են ուզում: Ամերիկայի ազնիվ սպորտսմենները նախընտրում են սպորտային նշանները գնդակոծել խաղագնդակներով, քան թե գնդակոծել մարդկանց»:*

# ՋԱՆԳՎԻ ՁՈՐՈՒՄ

Վ. ԱՆԱՆՅԱՆ

Երևանից ցած, Զանգվի աջ ափին, հանրային մի ընդարձակ թթաստան կա։

Հրացանս վերցրի և իմ ընկեր Վաղոյի հետ միասին իջա Զանգվի ձորը՝ թթաստանում որս անելու։

Մենք սպանված թռչուններն էինք փնտրում, երբ իմ կրակոցից խուճապահար երկու ագռավ թափով եկան և իջան մեր դիմացի բարդու կատարին։ Նրանց բույնը գզզված փափախի նման նստած էր բարակ ճյուղերի վրա։

— Դրանց անպատճառ ճուտեր ունեն, մի տես՝ ոնց են անհանգիստ մեզ նայում,— ասաց Վաղոն։

— Գնանք այստեղից,— առաջարկեցի ես,— հիմա մեր կրակոցներից խեղճ ծնողները սրտաճաք կլինեն։

— Լավ ես ասում, գնանք,— համաձայնվեց Վաղոն։

Մենք գետի ափով ցած գնացինք։ Այդ պահին երկու տղա, մյուս ափից լողալով, անցան գետը։ Նրանցից մեկը, արևից բրոնզի գույն ստացած մի պատանի, սկսեց մագլցել այն ծառը, որի վրա ագռավներն էին նստած։

Մենք կանգ առանք ու հետաքրքրությամբ դիտում էինք. տեսնես ինչ են անելու ագռավները։

Նրանք վերևում անհանգստացան, ճյուղից ճյուղ թռան, ապա տեսնելով, որ տղան համառությամբ բարձրանում է վեր, սկսեցին սպառնագին պտույտներ գործել նրա գլխավերևը։

Տղան, որ, ըստ երևույթին, առաջին անգամ չէր ագռավի բույն քանդում, առանց շփոթվելու վեր բարձրացավ և ձեռքը խոթեց բույնը։ Երբ ձեռքը դուրս հանեց մենք ագռավի ճուտը չտեսանք, բայց որ տղան ցած իջնելիս ճյուղերից մի ձեռքով էր բռնում, հասկացանք, որ մյուս ձեռքը դատարկ չէ։

Ագռավներն այնպիսի վայնասուն բարձրացրին, այնպես էին խփվում ծառի ճյուղերին ու հարձակվում իրենց ձագը հափշտակողի վրա, որ ես զարմանում էի, թե ինչու այդ տղան շփոթմունքից վայր չի ընկնում։

Տղան ցած թռավ՝ ձեռքի ձագը ընկերոջը ցույց տալով։ Բացեց իր ճերմակ ատամները. հրճվում էր. հրճվում էր, իսկ այնտեղ, վերևում ծնողները աղիողորմ ճչում էին։

Նրանցից մեկը, որ մարմնով ավելի փոքր էր, ուժասպառ իջավ բարդու ներքևի ճյուղին, որը տղաների գլխավերևում էր։ Նայում էր ցած, իր գերի ձագին ու այլևս չէր կարողանում ձայն հանել. ձայնը կտրվել էր։ Երբ տղաները շարժվեցին դեպի գետը, այդ ագռավը վիզն առաջ մեկնեց, թույլ ճիչ արձակեց ու ճյուղից ցած ընկավ՝ ուղիղ տղաների ոտքերի մոտ։

Էլ համբերել չէր կարելի։ Վաղոն վազեց դեպի տղաները, իսկ սրանք՝ դեպի գետը։

— Ճուտը գցիր,— որոտաց նա ջուրը նետվող տղայի ետևից։ Տղան ճուտը գցեց ու փախավ։

Ես կանգնել եմ ծառի տակ ու նայում եմ ուշաթափված թռչունին, նա թույլ շարժում է ոտքերն ու կտուցը բաց ու խուփ անում՝ ափ նետված ձկան պես։ Իսկ մյուս ագռավը, իջել է ներքևի ճյուղին ու ողբ է բարձրացրել իր ընկերուհու համար։

Եկավ Վաղոն, մի ձեռքում՝ ահաբեկված ճուտը, մյուսում՝ ջուր։ Բռի ջուրը նա լցրեց ագռավի գլխին և ձագը դնելով նրա առաջ, հեռացավ։

Երբ մայր թռչունը աչքը բացեց, ձագին տեսավ և սկսեց կտուցով հարդարել նրա

նոր թռչնող թևերը: Ծառից հայրն էլ ցած թռավ ու երկուսով պտտվում էին աղետից ազատված իրենց ձագի շուրջը և հավանաբար իրենց թռչնային լեզվով գուրգուրանքի խոսքեր էին ասում նրան:

Նստել նայում ենք, տեսնենք էլի ինչ են լեզվով նրանց հասկացնես, որ բարի նպատակով ենք վերցրել իրենց ձագին:

Շատ ապրումներ ունեցան խեղճ ծնողները, շատ անգամ ճյուղերին կպան ու վեր մագլցող Վաղոյի գլխին հարվածեցին իրենց թևերով, մինչև որ ընկերս հասավ բնին,



անելու այդ թռչունները: Հիմա էլ կտուցով բռնել են իրենց ձագի թևերը և ուզում են վերև տանել, չի հաջողվում, ձագը ցած է ընկնում:

— Գնանք օգնենք,— առաջարկեց Վաղոն:

Երբ մենք նրանց ճուտին վերցրինք՝ վայնասուն բարձրացրին մեր շուրջը: Դե, ի՞նչ ձագը տեղը դրեց ու շտապով ցած իջավ:

Միայն այդ ժամանակ ագռավները հանդարտվեցին և բնի եզրին նստած՝ նայում էին մեր ետևից և երբեմն էլ, մեղմ կռռում. երևի շնորհակալություն հայտնում իմ ընկեր Վաղոյին:

Իսկ Վաղոն այնպես էր գոհ, ինչպես մարդ գոհ է լինում, երբ մի մեծ ու բարի գործ է կատարում:

## ՊԻՈՆԵՐ ԵՄ ԴԱՐՁԵԼ ԵՍ

*ՄԱՐԻՅԱ ՎՇՏՈՒՆԻ*

Այնման ուրախ եմ այսօր.
Պիոներ եմ դարձել ես,
Իմ ընկերներն էլ բոլոր
Այսօր ուրախ են ինձ պես:

Ու ես քայլում եմ հպարտ՝
Կարմիր վզկապը կրծքիս,
Ճամփին կարծես ամեն մարդ
Ինձ ջերմ ողջույն է տալիս:

Աշխատասեր կլինեմ
Ու միշտ համառ՝ պայքարում,
Չէ որ խոստում եմ տվել
Մեր դպրոցի դահլիճում:

Ու կհիշեմ հավիտյան
Ես իմ խոստումը հաստատ
Եվ մեծ գործին լենինյան
Ես կլինեմ միշտ պատրաստ:

# ԵՐԳ ԹՈՒՆԵԼԱԳՈՐԾԻ ՄԱՍԻՆ

ՀԵՆՐԻԿ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Նկ. Ս. ՍԱՖԱՐՅԱՆԻ

Խաղում էինք ծովափին
Մի խումբ առույգ մանուկներ,
Մեզ հետ խաղում էր արփին,
Որպես ոսկե խաղընկեր...

Ու ծովն էինք նետվում մենք
Նավաստիներ իբր թե,
Կամ մեր կարթով ինքնաշեն
Որսում ձկներ արծաթե։

Երբ մանկությունս եմ հիշում
Եվ լճափը Սևանա,
Իմ հուշերի մշուշում
Երևում է այն տղան

Արևի պես շիկահեր,
Գարնան հովի պես զվարթ,
Ինձ հետ երեկ խաղում էր
Լճի ափին ծաղկազարդ։



Իսկ մի տղա իր բահով
Փոքրիկ ջրանցք էր բացում
Եվ քարերից ապահով
Ամբարտակներ կառուցում,

Փոքրիկ-փոքրիկ տնակներ
Ծովեզերքի ավազում,
Որպես շքեղ քաղաքներ
Ապագայի երազում։

Բայց ո՞վ արդյոք կիմանար,
Որ նույն ափին Սևանի
Պիտի այսօր նա դառնար
Թունելագործ անվանի,

Ճամփա բանար ջրերին՝
Մանկության պես զվարթուն,
Ջրերը լույս դառնային
Որպես ոսկի հեքիաթում։

# ՊԻՈՆԵՐԱԿԱՆ դրուժինայում և ջոկատներում

## ՍԻՐԵԼԻ ՋՈԿԱՏԱՎԱՐԸ

Երբ հարցնեք Երևանի 28-րդ դպրոցի վեցերորդ «ա» դասարանի աշակերտներին, թե ո՞վ է գերազանցիկ կա դասարանում, նրանք կպատասխանեն.

— Տասներկու:— Եվ անուն ազգանունով կհիշատակեն տասնմեկ հոգու, ապա կավելացնեն.

— Տասներկուերորդը ընկեր Ջեմմա Մացոյանն է:

— Ինչպե՞ս թե Ջեմման, չէ՞ որ նա սովորում է արդեն իններորդ դասարանում, իսկ դուք միայն վեցերորդում եք:

— Դե, նա մեր ջոկատավարն է,— կըպատասխանեն պիոներները և հաստատ կըմնան այն համոզմունքին, թե Ջեմմա Մացոյանը պետք է համարվի իրենց դասարանի գերազանցիկներից մեկը: Երեխաները իրենց ջոկատը չեն պատկերացնում առանց Ջեմմայի, այնքան կապված են նրա հետ, սիրում են նրան:

Անցյալ ուսումնական տարին դեռ նոր էր սկսվել: Այդ օրերին էր, որ հինգերորդ «ա» դասարան մտավ ավագ ջոկատավարը՝ 8-րդ դասարանի աշակերտուհի Ջեմմա Մացոյանի հետ և հայտնեց, որ Ջեմման նշանակվել է նրանց ջոկատի ջոկատավար:

Երեխաները լսել էին Ջեմմայի մասին: Նա ուսման առաջավոր էր, լավ կոմերիտական և լավ ընկեր: Այդ էր պատճառը, որ նրանք հենց սկզբից ուրախացան դրա համար: Իսկ Ջեմման, երբ մենակ մնաց պիոներների հետ, մի պահ սրտում վախ զգաց:

— Շատ դժվար էր ինձ համար այդ ժամանակ, ասում է Ջեմման: Չէ՞ որ քառասուն պիոների հանձնել էին ինձ, քառասուն հոգու համար պատասխանատու էի դարձել ես: Բայց ես գիտեի, որ հենց առաջին րոպեից պետք է աշխատել կապվել երեխաների հետ, լսել նրանց, ընդառաջ գնալ նրանց պահանջներին:

— Նախքան առաջիկա հանդիպումը պիոներների հետ,— շարունակում է Ջեմման, ես նախօրոք կազմել էի ջոկատի աշխատանքի պլանը: Այդ պլանը ես կարդացի պիոներներին և առաջարկեցի նրանց, որպեսզի իրենց կարծիքն ասեն: Նրանք աշխույժ կերպով մասնակցեցին պլանի քննարկմանը, նոր հարցեր առաջ քաշեցին, փոփոխություններ մտցրեցին:

Այսպես սկսվեց Ջեմմա Մացոյանի նոր աշխատանքը:

Կարճ ժամանակում երեխաները սերտորեն կապվեցին Ջեմմայի հետ: Նա միշտ լինում էր ջոկատում, ընդառաջ գնում պիոներներին, օգնում էր նրանց: Իմանալով, որ երեխաներից շատերը պարել չգիտեն, Ջեմման սկսեց պարապել նրանց հետ, ջոկատում պարի խմբակ կազմակերպեց:

Մի անգամ օղակային հավաքույթում գերազանցիկ Լյուդմիլա Գալչյանն ասաց.

— Իսկ ինչո՞ւ չունենանք երգի խմբակ:

— Եկեք խնդրենք ընկեր Ջեմմային, մեզ համար թող երգի խմբակ կազմակերպի,— հավանություն տվեց մի ուրիշ պիոներ և մի քանի օր անց, դպրոցի ազատ դասարաններից մեկից լսվում էր երգի ներդաշնակ ձայնը: Այդ Ջեմմա Մացոյանն էր իր պիոներներին երգել սովորեցնում:

Ամեն ինչում լինել օրինակելի, անձնական օրինակով ցույց տալ պիոներներին, թե ինչպիսին պետք է լինել. ահա Ջեմմա Մացոյանի կարծիքը:

Այդպես է նա մտածում ու աշխատում, և հենց այդ է պատճառը, որ ընկեր Ստալինի անվան ջոկատը դպրոցի ամենաառաջավոր ջոկատն է:

Ջեմմա Մացոյանը մենակ չի աշխատում: Նրան միշտ օգնում են կոմերիտական կազմակերպությունը, դրուժինայի և ջոկատի խորհուրդները, ուսուցիչները և ավագ ջոկատավարը:

Ռ. ՂԱՍԱՐՅԱՆ

## ՋԵՐՄ ՀԱՆԴԻՊՈՒՄ

Լուսավոր ու ընդարձակ դահլիճում հավաքվել են Երևանի Դ. Դեմիրճյանի անվան դպրոցի պիոներներն ու դպրոցականները: Եկել են նաև ուսուցիչները, շատ ծնողներ:

Մեծ սեղանի շուրջը նստած են Միկոյանի անվան պատանի հանդիսատեսի թատրոնի մի խումբ արտիստներ, նրանք աշակերտների հետ հանդիպման են եկել: Արտիստների և պիոներների միջև մտերմությունը վաղուց է սկսվել: Երբ պիոներները թատրոնում դիտեցին Վ. Հյուգոյի «Թշվառներ» պիեսի բեմադրությունը, արտիստները խոստացան գալ հանդիպման: Եվ ահա դրուժինայի խորհրդի հրավերով նրանք դպրոցում են:

Աշակերտուհի Անահիտ Զարենցը պատմեց Վիկտոր Հյուգոյի ապրած ժամանակաշրջանի և «Թշվառներ» վեպի մասին: Հետո ելույթ ունեցան Էլիտա Մխիթարյանը և Էմմա Կարապետյանը: Նրանք պատմեցին ներկայացումից ստացած իրենց տպավորությունները:

— Ինձ վրա մեծ տպավորություն թողեց արտիստ Գրիգոր Զալիկյանի խաղը Ժան Վալժանի դերում,— ասում է Էմման: Հետո ելույթ ունեցան հյուրերը՝ ռեժիսյոր Ա. Աղասյանը պատմեց բեմադրության մասին, իսկ արտիստներ Գ. Զալիկյանն ու Էմմա Վարդանյանը արտասանեցին իրենց դերերից հատվածներ:

Դրուժինայի խորհուրդը որոշել է նման հանդիպումներ հաճախակի կազմակերպել:

*Ժ. ՄԱՐԳԱՐՅԱՆ*

## ՀԻՆ ԱՇԽԱՐՀԻ ՅՈԹ ՀՐԱՇԱԼԻՔՆԵՐԸ

*Կ. ԱՎԵՏԻՍՅԱՆ*

*(Աշխարհագրական գիտությունների թեկնածու)*

Հին աշխարհում յոթ հրաշալիքներ են համարվել ճարտարապետության և քանդակագործության յոթ նշանավոր կոթողները:

Այդ յոթը կոթողներից մեկը Ալեքսանդրիայի փարոսն է, որը կառուցվել է Պտղոմեոս 1-ի կողմից մեզանից մոտ 2300 տարի առաջ: Նա կանգնած էր Փարոս կղզու վրա Ալեքսանդրիա նավահանգստի մուտքի մոտ: Այդ քաղաքը Միջերկրական ծովի ծաղկած ու վաճառաշահ քաղաքներից էր և այդտեղ էին ժամանում առևտրական բազմաթիվ նավեր, որոնք շատ և շատ հեռվից տեսնում էին Ալեքսանդրիայի փարոսը: Նա այնքան հայտնի էր, որ փարոս



բառը հունարեն լեզվի մեջ մտավ նրանից: Նա ուներ 120 մետր բարձրություն, կառուցված էր սպիտակ քարից և ուներ բազմաթիվ հարկեր:

Հրաշալիքներից մեկն էլ հոչակավոր Քեոպսի բուրգն է, որը կառուցվեց Քեոպս փարավոնի ժամանակ, մեզանից մոտ հինգ հազար տարի առաջ Գիզեյում (Կահիրեի մոտ): Այն հսկայական քարերը, որից կառուցված է բուրգը մեծ դժվարությամբ բերվել են վերին Եգիպտոսից: Ինչպես հայտնի է բուրգերը քառանկյունի նիստով և հետզհետե բարակող քարե շինություններ են, որ հին Եգիպտոսում փարավոնները շինել էին տալիս իրենց դամբարանի համար, ստրուկների ծանր ու չարքաշ աշխատանքով: Բուրգի կառուցումը սկսում էին իրենց գահ բարձրանալու օրվանից մինչև մահ: Երբ փարավոնը մեռնում էր, նրա մարմինը զմռսում և պահում էին բուրգում, հետը դնելով ոսկեզօծ իրեր, կահ-կարասիք և ուտելիք: Այդ բուրգը համարվում էր աշխարհի քարե ամենամեծ զանգվածը: Նրա կշիռը

հաշված է 7 միլիոն տոննա: Օգտագործված է 2.300.000 քար, յուրաքանչյուրը միջին հաշվով $2^{1}/_{2}$ տոննա քաշով: Այս հսկայական քարերը բարձրացնում էին հողաթմբեր կառուցելով և համապատասխան թեքություն ստանալով: Ապա հեռվից քարերը գլորելով բերում էին: Աշխատանքը ավարտելուց հետո հողաթմբերը քանդում էին: Այս ծանր աշխատանքը կատարում էին դժբախտ ստրուկների ու գյուղացիների ձեռքով:

Ներկայումս նրա բարձրությունը 146 մետր է, իսկ նախապես եղել է 153: Բուրգը քառակուսի է, ինչպես նաև մնացած բոլոր բուրգերը, յուրաքանչյուր կողմի երկարությունը 230 մետր է, իսկ բազիսը 51.529 քառ. մետր. նա կառուցվել է 30 տարվա ընթացքում, որի վրա աշխատել են 100.000 բանվոր, որոնք երեք ամիսը մեկ փոխվում էին, սակայն 100.000-ից ոչ պակաս մարդ շարունակ աշխատել է նրա շինարարության վրա: Այն նախապես ծածկված է եղել գույնըզգույն ծածկոցով, որ նրան միակտոր զանգվածի նմանություն է տալիս, բուրգն ունի ստորերկրյա մի քանի նկուղներ և գեղաքանդակ մի սրահ, որ կոչվում էր արքայական սրահ: Սակայն Քեոպսին վիճակված չէր մնալ իր բուրգում: Ավանդությունն ասում էր, որ ժողովուրդը նրա մարմինը կտոր-կտոր է արել ու գցել:



Մյուս հրաշալիքը դա Հռոդոսի հսկա կոլոսն էր: Սա մի հոյակապ արձան էր, որը կանգնեցված էր Միջերկրական ծովում գտնվող Հռոդոս կղզում, Հռոդոս նավահանգստի մուտքի առաջ և նայում էր դեպի էգեյան ծով: Զնայած իր մեծության և համբավին, ունեցել է կարճատև պատմություն: Նա Հելիոսի՝ արևի աստծու վիթխարի բրոնզյա արձան էր, որը կանգնեցրած էր մեզանից 2210 տարի առաջ: Հռոդոսն այն ժամանակ ուներ առևտրական նշանակություն: Արձանը գտնվում էր նավահանգստի մուտքի առաջ: Պատրաստելուց վաթսուն տարի հետո, երկրաշարժի հետևանքով նա կործանվեց:





Կարիայի թագավոր Մավզոլի շքեղ գերեզմանը Հալիկառնասում, որից ծագել է Մավզոլեյ բառը, յոթ հրաշալիքներից մեկն էր: Այն կառուցվել է 351 թ. մեր թվարկությունից առաջ՝ Մավզոլի այրի Արտեմիսի կողմից, և այն ժամանակվա ամենահոյակապ գերեզմանն էր: Այն ուներ 35 մետր շրջագիծ և 32 մետր բարձրություն: Քան-

ղակներից մի քանիսը այժմ գտնվում են Բրիտանական թանգարանում: Նրա գագաթին կանգնեցված էին Մավզոլի և նրա թագուհու արձանները:



Մյուսը՝ Զևսի վիթխարի արձանն էր, որը պատրաստել էր հունական ամենանշանավոր քանդակագործ Ֆիդիասը Օլիմպիայի տաճարի համար: Զևսի արձանը համարվում էր քանդակագործի գլուխգործոցը, բայց նրա ճակատագիրը անհայտ է: Իր ժամանակին այս արձանը այնպիսի համբավ ուներ, որ յուրաքանչյուր հույն փափագում էր իր կյանքում գեթ մի անգամ տեսնելու այն: Ներկայումս նրա միակ հետքը գոյություն ունի մի քանի փոքր դրամների վրա, որտեղ ցույց է տրված արձանը՝ Զևսը նստած չափազանց լավ քանդակված գահի վրա: Ըստ ավանդության, նրա մարմինը պատրաստված էր փղոսկրից, իսկ հագուստը՝ ոսկուց:

Հրաշալիքներից մեկն էլ Արտեմիդայի տաճարն էր, որը Հին աշխարհում շատ էր հռչակված: Տաճարում դրված էր Արտեմիդայի հայտնի արձանը, որը ասում էին իբր թե ընկել է երկնքից: Գոթերը մ. թ. 262 թ. ավերեցին Լիդիա քաղաքը և տաճարը: Պեղումները ցույց են տվել, որ տաճարը մի ժամանակ գրավել է 24.000 քառ. մետր տարածություն:

Հին աշխարհում Բաբելոնի «Առկախյալ պարտեզները» համարվում էին քաղաքի ամենամեծ հրաշալիքները: Նրանք կազմված էին մոտ 4 հեկտար տեռրասաձև պարտեզներից, որոնք գտնվում էին 25—90 մետր բարձրություն ունեցող կամարների և ար-



հեստական բլուրների վրա: Կառուցվել են խնջույքի սրահներ, որոնք լցվում էին լավագույն ծաղիկների բուրմունքով: Պարտեզները ջրելու համար Նաբուգոդոնոսորը այգիների վերևում մի ջրամբար էր կառուցել, որը պտուկով լցվում էր Եփրատից: Ըստ ավանդության՝ «Առկախյալ պարտեզները» կառուցվել էին այն թագուհու համար, որը եկել էր լեռնային երկրից, այսինքն՝ Շամիրամի համար:



Այս բոլորը համարվում են Հին աշխարհի «Յոթ հրաշալիքները»: Միջին դարերում «Յոթ հրաշալիքների» թվին դասեցին նաև Չինական Մեծ պարիսպը, Նանկինի հախճապակյա աշտարակը, Իտալիայի Պիզա քաղաքի թեք աշտարակը և այլն: Հետագայում «Յոթ հրաշալիքներ» հասկացողությունը արդեն դարձավ մեծ կոթողներին տրվող գաղափար:



# Հետաքրքրաշարժ ԳԵՈՔԻՄԻԱ

*Թ. ԹԱԴԵՎՈՍՅԱՆ*

*(Գեոլոգիական գիտությունների թեկնածու)*

Եթե դուք ուզում եք իմանալ, թե ինչպես են առաջանում հանքերը և ինչի համար են նրանք անհրաժեշտ մեր կյանքում, կարդացեք ակադեմիկոս Ֆերսմանի «Հետաքրքրաշարժ գեոքիմիա» գիրքը:



«Ատոմը քայքայվում է, ուրան և ռադիում» այս վերնագրի տակ դուք կիմանաք ուրանի հետ կապված հրաշքների մասին:

«Ածխածինը ամբողջ կյանքի հիմքն է» գլխում դուք կիմանաք, որ վառելափայտի մեջ կուտակված ածխածնի հսկայական պաշարը բույսերը վերցնում են մթնոլորտից: Այս նույն գլուխը պատմում է, որ թանկարժեք ալմաստը, սովորական ածուխը և մատիտի միջուկը՝ գրաֆիտը, միևնույն բաներն են:

«Ֆոսֆորը կյանքի հիմքն է և մտքի էլեմենտը» գլխում դուք կիմանաք, որ հին աշխարհի ալքիմիկոսները ֆոսֆորն անվանում էին փիլիսոփայական քար և փորձում էին նրա օգնությամբ երիտասարդացնել ծերերին կամ սնդիկից ոսկի ստանալ: Յուրաքանչյուրը մեզնից 100 գրամ հացի հետ ուտում է ֆոսֆորի մինչև 10.000.000.000.000.000.000.000 ատոմ: Ֆոսֆորի խոշոր հանքեր կան Կոլա թերակղզում, որտեղից և միլիոնավոր վագոններով տարվում են մեր հայրենիքի դաշտերը պարարտացնելու համար: Այժմ արդեն փորձում են ֆոսֆորով հարստացնել և ծովափնյա ջրերը, որպեսզի ձկները լավ աճեն և այդ փորձերը ցույց են տալիս, որ ֆոսֆորով հարուստ ջրերում ձկները երկու անգամ ավելի արագ են աճում:



Դուք այս գրքից կիմանաք, որ առանց ծծումբի հնարավոր չէ թղթի, լուցկու, նավթի, ցեմենտի, ռետինի, ներկերի, դեղորայքի, դինամիտի, վառոդի և ուրիշ շատ բաների արտադրություն: Ծծումբի համար 18-րդ դարում կատաղի պայքար կար Անգլիայի, Իտալիայի և Իսպանիայի միջև:

Ծծումբի խոշոր հանքավայրեր կան Սովետական Միությունում, Իտալիայում և Իսպանիայում:



Գիտե՞ք արդյոք, որ գիշերային հրավառությունների՝ սալյուտի ժամանակ, այրվող գունավոր կրակները պատրաստում են ստրոնցիումի և բարիումի աղերից: Այդ գունավոր կրակները կոչվում են բենգալյան հրթիռներ և իրենց անունն ստացել են Հնդկաստանից: Դրանցով հնդիկ քուրմերը տաճարներում զարմանք ու ահ էին տարածում խավարամիտ մարդկանց մեջ: Պատերազմների ժամանակ և օվկիանոսում մեծ հեռավորությունների վրա այդ գունավոր հրթիռներով կարևոր ազդանշաններ են տրվում:

Կարդալով այս գիրքը դուք կիմանաք, որ առանց անագի չեն կարող լինել պահածոներ: Այդ փափուկ մետաղի մասին մարդը գիտեր դեռևս մի քանի հազարամյակներ առաջ: Անագը երկարատև ցրտից փչանում է, հիվանդանում է «անագի ժանտախտով» և փոշիանում: Անագի գլխավոր հանքավայրը գտնվում է Մալակկա թերակղզում:



Գիտե՞ք արդյոք, որ յոդն ամենուրեք է. մեր շուրջը չկա մի որևէ բան, որ յոդ չպարունակի: Առանց յոդի մենք ապրել չենք կարող, նրա գոլորշիները մենք շնչում ենք օդի հետ և ուտում սննդի հետ: Բարձր լեռներում օդը ավելի քիչ է պարունակում յոդի գոլորշիներ, քան ծովափի օդը, և այդ պատճառով էլ խպիպ հիվանդությունը լեռներում շատ է տարածված:

Ֆտորը կարող է մաշել ապակին: Նրա օգնությամբ են ապակյա վազերի վրա հրաշալի տեսարաններ նկարում: Նրան անվանում են ամենակեր էլեմենտ: Ֆտորը ստանում են կրիոլիտ կոչված հանքից, որից շատ կա Գրենլանդիայի ափերում:




Կարդալով 366 էջից բաղկացած և 430 նկարներով զարդարված այս գիրքը, դուք շատ բան կիմանաք մեր երկրի հանքային հարստությունների մասին և մի հեքիաթային ճանապարհորդություն կկատարեք Մենդելեևի աղյուսակում՝ իմանալով 92 էլեմենտներից յուրաքանչյուրի կենսագրությունը:



# ՌԵԲՈՒՍ

*Առաջարկություն Շիրվանզադեի անվան դպրոցի աշակերտուհի Լ. Հարությունյանի*



## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկը ըն. Կ. ՔՈԹԱՆՋՅԱՆԻ

## *ԽՄԲԱԳՐՈՒԹՅԱՆ ԿՈՂՄԻՑ*

Մեր ամսագրի անցյալ տարվա 8-րդ համարում, «Մեր օրացույցը» բաժնում խմբագրությունը սխալ է թույլ տվել տպագրելով «Ռափայել Պատկանյան» տեղեկանքը, որտեղ ասված է. «Չնայած, որ Պատկանյանը իր հայացքներում հետևողական դեմոկրատ չէր և թույլ է տվել մի շարք լուրջ սխալներ, բայց և այնպես իր մի շարք գրվածքներում աշխատում էր հայ ժողովրդին ազգային ինքնագիտակցության բերել»: Այս կոպիտ սխալի համար ամսագիրը խիստ քննադատության ենթարկվեց Հայաստանի Կոմպարտիայի 16-րդ համագումարում, ընկ. Զավեն Գրիգորյանի կողմից:

Պատկանյանը երբեք էլ դեմոկրատ չի եղել և չի պայքարել հայ ժողովրդի ազատագրության համար: Նա իրականում եղել է ազգայնական և արտահայտել է հայ բուրժուազիայի շահերը: Խմբագրությունն ընդունում է իր կատարած սխալը և անհրաժեշտ եզրակացություն կհանի դրանից:

---


*Խմբագիր՝* ՍԵՎՈՒՆՑ Գ.

*Խմբագրական կոլեգիա՝* ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԲԱՏԻԿՅԱՆ ՀՐ., ԽՍԱԲԵԿՅԱՆ Է., ՀԱԿՈԲՅԱՆ Գ., ՄՈՎՍԻՍՅԱՆ Ա., ՍԻՄԱԿ, ՍԻՄՈՆՅԱՆ Ե., ՏԱԼՅԱՆ Վ., ՕՀԱՆՅԱՆ Ս.

„Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Маркса 21

*Հասցեն՝ Երևան, Մարքսի փողոց № 21, հեռախոսներ՝ 2-44-83, 2-59-06*

*ՎՖ 00423. Պատվեր 678 տիրաժ 5000, Տպագրական $2^1/_4$ մամուլ. Ստորագրված է տպագրության 10/I 1953 թ.*

*Հայպոլիգրաֆհրատի № 1 տպարան, Երևան, Ալավերդյան փող. № 65, 1953 թ.*

# ՄԵՐ ՕՐԱՑՈՒՅՑԸ

1953

## Շանդոր Պետեֆի
## (1823—1849)

1844 թվին հունգարական փոշոտ ճանապարհներով դեպի Պեշտ էր գնում մի երիտասարդ։ Նա հյուծված էր, գունատ և ինչպես երևում էր՝ հազիվ էր հաղթահարում ճանապարհի դժվարությունները։ Նրա միակ բեռը մի ընդհանուր տետրակ էր, որի մեջ մանր տառերով ոտանավորներ էին գրված։



Այդ երիտասարդը Շանդոր Պետեֆին էր։ Թափառաշրջիկ դերասանի ծանր ու աննախանձ կյանքը թողած, նա իր բանաստեղծությունները տանում էր Պեշտ՝ իր ժամանակի հունգարական խոշորագույն բանաստեղծներին ցույց տալու համար։

Նրա ոտանավորները իսկույն հավանեցին և սկսեցին տպագրել։ Շատ չանցած Պետեֆու համբավը տարածվեց ամբողջ երկրով մեկ։ Նրա երգերը տարածվում են ժողովրդի մեջ, երգվում են աշխատավորության կողմից։ Բոլորը հիանում են նրա պոեզիայի նկարագրական ուժով, նրա հայրենասիրական և քաղաքական բանաստեղծություններով։

1848 թվին Պետեֆին արդեն իշխում է դեմոկրատական տրամադրությամբ տարված Հունգարիայի մտքերի և զգացմունքների վրա։ Նա դառնում է առաջադեմ ռեսպուբլիկական երիտասարդության առաջնորդը։ «Թագավորներին տարեք կառափնարան», «Արթնացիր իմ երկիր», «Մագնատներին» և բազմաթիվ այլ բանաստեղծություններով Շանդոր Պետեֆին կոչ է անում ելնել բռնակալների դեմ, ջախջախել միապետությունը։

Շանդոր Պետեֆին միայն բանաստեղծություններով չէր, որ պայքարում էր դեմոկրատական Հունգարիայի համար։ Նա ասում էր «Ես գերադասում եմ դառնալ իմ խիզախորեն և անողոքաբար արտահայտած համոզմունքների զոհը, քան թե մեղադրել ինձ վախկոտության մեջ»։ Նա որպես սպա մարտնչում է Եվրոպայի հետադիմական ուժերի դեմ և 1849 թվին 26 տարեկան հասակում զոհվում է ռազմադաշտում։

Պետեֆու ցանկությունները, երազները իրականանում են միայն հիմա, հարյուր տարի հետո, երբ շնորհիվ Սովետական Բանակի ստեղծվեց խաղաղ դեմոկրատական Հունգարիա։

Հունվարի 1-ին լրացավ հունգարական հանճարեղ բանաստեղծի, 1848 թվի ռևոլյուցիայի ղեկավարներից մեկի, ռևոլյուցիոն-դեմոկրատ Շանդոր Պետեֆու ծննդյան 130 տարին։

## Ալեքսեյ Տոլստոյ
## (1883—1945)

«Ալեքսեյ Նիկոլաևիչ Տոլստոյը Սովետական երկրի ամենալավագույն և ամենաճանաչված գրողն է», ասել է ընկեր Մոլոտովը Սովետների 8-րդ համագումարում։ Եվ իրոք, ո՞վ չի լսել Ալեքսեյ Տոլստոյի անունը, ո՞վ չի կարդացել նրա հռչակավոր գործերը՝ «Տառապանքի ուղիներով» տրիլոգիան, «Պետրոս առաջին» վեպը, «Հաց» վիպակը և մյուս հանրահռչակ գործերը։

Ալեքսեյ Տոլստոյը ծնվել է 1883 թվականի հունվարի 10-ին ազնվականի ընտանիքում։ Նա գրել սկսել է վաղ հասակում, սկզբում ոտանավորներ, բայց շուտով թողնում է ոտանավորներ գրելը և զբաղվում միայն արձակով։

Մինչև Հոկտեմբերյան ռևոլյուցիան, Ալեքսեյ Տոլստոյը արդեն գրողի համբավ ուներ, բայց նրա տաղանդը ծաղկեց միայն Հոկտեմբերյան ռևոլյուցիայից հետո։

«Տառապանքի ուղիներով» տրիլոգիան դա ռևոլյուցիայի և քաղաքացիական պատերազմի էպոպեան է։ Այդ տրիլոգիան սովետական գեղարվեստական գրականության խոշորագույն և ամենատարածված ստեղծագործություններից մեկն է։ Նրա հիմնական բովանդակությունը ռևոլյուցիայի շնորհիվ մարդկանց վերափոխումն է։

Քաղաքացիական պատերազմից Ցարիցինի պաշտպանությանն է նրվիրված «Հաց» վիպակը։

Ալեքսեյ Տոլստոյը գրել է նաև մանուկների համար։ Նրա «Աելիտա», «Ինժեներ Գարինի հիպերբոլոիդը» գիտաֆանտաստիկական վեպերը, «Նիկիտայի մանկությունը» վիպակը, բազմաթիվ հեքիաթները և պատմվածքները մանուկների սիրելի գրքերն են։



Ալեքսեյ Տոլստոյը շատ է գրել նաև հայրենասիրական հոդվածներ և ակնարկներ հատկապես Հայրենական Մեծ պատերազմի տարիներին։

Սովետական կառավարությունը բարձր է գնահատել Ալեքսեյ Տոլստոյի ծառայությունը Սովետական Հայրենիքին և ժողովրդին և նրան արժանացրել է Ստալինյան մրցանակների։

Ալեքսեյ Տոլստոյը մեռավ 1945 թվականի փետրվարի 23-ին։

